ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ [illegible] ԹԻՒ 7

# ՓԱՌԼԱՄԵՆԹԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ
ԵՒ
# ԺՈՂՈՎԱՎԱՐՈՒԹԻՒՆ

Պատրաստեց
ՅԱԿՈԲ Գ. ԴԵՐՁԱԿԵԱՆ, Պ.Ա, Պ.Օ.
[illegible] Ի ՊՈՍԹԸՆ

ՊՈՍԹԸՆ, ՄԷՍ.
[illegible]
1912

UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Ի. Ա. ԵՐԱՆ, ԹԻՒ 7

Derdzakian, Hakob

# ՓԱՐԼԱՄԷՆԹԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ

# ԺՈՂՈՎԱՎԱՐՈՒԹԻՒՆ




Պատրաստեց

ՅԱԿՈԲ Գ. ԴԵՐՁԱԿԵԱՆ, Պ.Ա, Պ.Օ,

ՓԱՍՏԱԲԱՆ Ի ՊՈՍԹԸՆ

ՊՈՍԹԸՆ, ՄԷՍ.

ԵՐԱՆ ՄԱՄՈՒԼ

1912

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

*Այս գործին նպատակն է ծանօթացնել տարրական, այլ սակայն գործնական և էական կանոններ, որով կը վարուին սահմանադրական, ազգային և ընկերային ժողովներ։*

*Տրուած կանոնները, ձևերն ու թելադրութիւնները հանրապէս ընդունուած են և այժմ կը գործածուին՝ Անգլիական փարլամէնթին, Ամերիկեան քոնկրէսին, Միաց. Նահանգաց օրէնսդրական մարմիններու և վաճառականական ու բարեսիրական բոլոր ժողովներուն մէջ։*

*Այս կանոնները հաւաքուած են անգլեամերիկեան օրինագիրքերէն և դասաւորուած են հետևողութեամբ հանրածանօթ օրէնսգէտներու հեղինակութիւններուն։*

**Յ. Գ. ԴԵՐՁԱԿԵԱՆ**

# Ներածութիւն

1. *Ժողովուրդ և կառավարութիւն ազգ մը կազմող երկու օրկանիք տարրերն են, որոնցմէ առաջինը կը ներկայացնէ գործ, աշխատանք և դրամագլուխ, իսկ երկրորդը ոյժ և հանրային կամք։ Երկուքն ալ իրենց գործառնութիւններուն մէջ յաջողելու բնական տէնչէն մղուած դարերու. որդեգրած «ոյժի միացման» վարդապետութեան փարած են, կազմելով քաղաքական, առևտրական, գործաւորական և ընկերային գործակցութիւններ։*

2. *Գործակցութիւնները երկու ճիւղի կը բաժնուին. ընկերութիւն* (partnership) *և քօրբօրացիա* (corporation)։

3. *Ասոնց կազմի տարբերութիւնը սոսկ տեսական չէ և ոչ ալ դժուար է զանոնք իրարմէ զանազանել։*

4. *«Ընկերութիւն» կը նշանակէ անհատներու գործակցութիւն մասնաւոր պայմանագրութեան մը տակ, որոնք միացուցած են իրենց դրամագլուխը, խելքն ու աշխատանքը վարելու որոշ գործ մը իրենց միացեալ շահին համար։ Ընկերներու իրարու հանդէպ յարաբերական դիրքն է տէր և գործակալ* (principal and agent)*. ընկերութիւնը կրնայ լուծուիլ ընկերներու կամքով ոևէ ատեն։*

5. *«Կօրբօրացիա» կը նշանակէ անհատներու հաւաքոյթ մը, որ կը կազմէ որոշ և անդամակցական մարմինէն տարբեր էութիւն* (entity) *մը, գոյութիւն ունեցող օրէնքի կամ կառավարական արտօնագրի* (charter) *մը համաձայն, որուն տրամադրութեան տակ կօրբօրացիան կը տիրանայ իր գերազանց յատկանիշները կազմող կարգ մը առանձնաշնորհումներու։ Այս առանձնաշնորհներէն մին է թէ կօրբօրացիան պիտի ունենայ*

իր սահմանադրութիւնը կամ արտօնագիրը և կանոնագրութիւնը և անոր բոլոր գործերը պիտի վարուին տիրէքթօրական անկախ դիւանի (board) մը կողմէ ։

6· Այս բացառիկ առանձնաշնորհումներու և անքաղդատելի առաւելութիւններու հետևանքով քաղաքակիրթ աշխարհներու մէջ կորբորացիաի գաղափարը խիստ ընդարձակած է, և այս գաղափարը անտարակոյս վերջին դարու զարգացման ամենազօրաւոր խթանն եղած է ։

7· Կորբորացիա կարելի է կազմել ուէ օրինաւոր նպատակի համար ։ Գլխաւոր տեսակներն են․

Քաղաքական (civil corporation),
Քաղաքային (municipal corporation),
Եկեղեցական,
Բարեսիրական և կրթական,
Հանրային (public corporation),
Անհատական (private corporation) ։

Կառավարական կամ ընկերային բոլոր կազմակերպութիւններ՝ իրենց գործերը վարելու համար խորհրդաժողով մը ունենալու են անպայման ։ Այս ժողովին կարևորութիւնը չեշտելու համար խիստ յարմարութեամբ մը կոչած են զայն ժողովուրդի կամ ընկերութիւններու դէկը կամ գործօն խելքը ։

8· Ընկերութիւններու յաջողութիւնը, զարգացումն ու բարօրութիւնը ժողովին տնօրինած կանոններէն և անոր գործելակերպէն կախուած ըլլալով՝ մեր նպատակը պիտի ըլլայ ուսումնասիրել օրինական և թէքնիքական կէտերը, որոնց համաձայն ներկայ ժողովներ կը կազմակերպուին ու կը գործեն ։

9· Ժողովներու նպատակն է առաջադրուած կամ նպատակուած խնդիրներու նկատմամբ ժողովրդին, անհատներու կամ անդամներու գաղափարն ու կամքն առնել և զանոնք օրինաւոր ձևի և գործադրելի վի-

ճակի մէջ դնելով՝ անոնց ընթացք տալ։ Ասոր համար պէտք է որ նախ ժողովն ինք օրինաւորապէս կազմակերպուի և երկրորդ, վարէ իր գործերը փարլամէնթական կանոններու համաձայն։

10. Ժողովներ երկու կարգի կը բաժնուին, կամաւոր և օրինական։ Ասոնք կրնան ըլլալ ժամանակաւոր կամ տևական։

*Ժամանակաւոր ժողովներ.*

11. Անհատներ կամ մասնախումբ մը մասնաւոր ծանուցագրով և կամ թերթերու մէջ ընդհանուր կոչով ժողովուրդը կամ դասակարգի մը պատկանող անհատներ ժողովի կը հրաւիրէ (տես թիւ **340**)։ Ընթերցողը որոշ հասկնալու է ծանուցագրէն թէ ո՞վ է հրաւիրողը, ինչո՞ւ կը հրաւիրէ, ե՞րբ և ո՞ւր։

Անհատներ հաւաքուած ըլլալով որոշուած ատենին և որոշուած տեղին վրայ, հրաւիրողը կամ ուրիշ մը ժողովը կարգի հրաւիրելէ ետք, կը կրկնէ հաւաքման նպատակը և կը խնդրէ որ ոմն անուանուի իբր ատենապետ (chairman) ժողովին։ Մէկը կ'անուանուի, ուրիշ մը կ'երկրորդէ այդ անուանումը։ Այս ընթացքով կը նշանակուին քանի մը ընտրելիներ, յետոյ այս ընտրելիներուն մէջէն մին կ'ընտրուի իբր ատենապետ, որ անմիջապէս ատեանը (chair) գրաւելով, վերոյիշեալ ընթացքով կը շարունակէ ընտրել ատենադպիր, ևն. (տես թիւ **341**)։

12. Այս եղանակով կազմուած ժողով մը կը կոչուի պարզ կազմակերպում և օրինաւորապէս կրնայ գործել ոևէ նպատակի համար։

*Տևական ժողովներ.*

13. Տևական ժողովները աւելի կարևոր և պաշտօնական հանգամանք ունենալով՝ կը կազմուին մեծ խնամով։ Այս կարգի ժողովներ կազմելու նախնական մասը ճիշդ նման է ժամանակաւոր ժողով մը

կազմելու կերպին ։ Հոն ընտրուող պաշտօնեաներ հոս կը նկատուին ժամանակաւոր պաշտօնեաներ, որոնք կ՚առաջնորդեն ժողովը մշտատեւ կազմակերպութեան ։

14․ Ամենէն առաջ կոմիտէ մը կ՚ընտրուի անդամներու խկութիւնը վաւերացնելու համար ։ Այս կոմիտէն կը կոչուի անդամական կոմիտէ ։ Քննութենէն ետք՝ կոմիտէն կը պատրաստէ անդամներու ցանկ մը եւ իր տեղեկագրին հետ միասին ատենադպիրին կը յանձնէ, որմէ յետոյ կ՚սկսի պաշտօնեաներու ընտրութիւնը ։

15․ Ընտրութեան երկու կերպ կայ․

ա) Ժողովը կ՚անուանէ մէկ կամ աւելի ընտրելիներ եւ յետոյ անոնց մէջէն կ՚ընտրէ առաջին պաշտօնեան ։ Նոյն կերպով կ՚ընտրուին քարտուղար եւ ուրիշ պաշտօնեաներ ։

բ) Ժողովը կ՚ընտրէ կոմիտէ մը որ ժողովին կը ներկայացնէ ընտրելիներ եւ ժողովը անոնցմէ կ՚ընտրէ պաշտօնեաները, կամ ընտրուածները կը վաւերացնէ ։

16․ Գործնական Ընտրութիւն Նախագահի․

Պրն․ Ա․ — յոտնկայս ատեանին ուղղելով կ՚ըսէ — «Տէր ատենապետ»,

Ատենապետը — «Պարոն Արա»,

Պրն․ Ա․ — «Տէր ատենապետ, կ՚առաջարկեմ որ Պրն․ Գուրգէն, որ ազնիւ եւ կարող երիտասարդ մըն է եւ ծանօթ փարլամէնթական մը, այս ժողովին իբր նախագահ անուանուի» ։

Ատենապետ — «Առաջարկուած է որ Պրն․ Գ․ ընտրելի նկատուի, այս առաջարկը երկրորդող կա՞յ» ։

Պրն․ Բ․ — «Տէր ատենապետ»,

Ատենապետ — «Պարոն Բաբկէն»,

Պրն. Բ. — «Կ'երկրորդեմ այդ առաջարկը»։

Ատենապետ — «Առաջարկուած և երկրորդուած է որ Պրն. Գուրգէն ընտրելի նկատուի. ուրիշ ընտրելիներ կա՞ն»։

Այս ընթացքով ժողովը կ'ընտրէ երեք ընտրելիներ, յետոյ,

Պրն. Դ. — «Տէր ատենապետ»,

Ատենապետ — «Պարոն Դանիէլ»,

Պրն. Դ. — «Կ'առաջարկեմ որ անուանումը (nomination) դադրի»։

17. Այս առաջարկը կ'երկրորդուի և կ'ընդունուի, եւ ընտրելիներուն վրայ գրաւոր քուէարկութիւն (ballot) կը կատարուի։ Սոնցմէ կ'ընտրուի Պրն. Գուրգէն, որովհետև մեծամասնութեան քուէն վաստկած է։ Պրն. Գուրգէն աթոռը կը գրաւէ և նոյն եղանակով կը շարունակէ ժողովը, նախ ընտրելով պաշտօնեաներ, և ապա պատրաստելով ընկերութեան սահմանադրութիւնն ու կանոնագիրը։

18. Նախագահն աթոռը գրաւելէն անմիջապէս յետոյ, նախ շնորհակալութեան ուղերձ մը կ'ընէ, և յետոյ հաւատարմութեան երդում կուտայ։

19. Ապագային նոր պաշտօնեաներու ընտրութեան ատեն, հին պաշտօնեաներ իբր առժամեայ պաշտօնեաներ կը ծառայեն։

20. Հոգածու ըլլալու է որ նախագահն ու միւս պաշտօնեաները ամէն կերպով վստահութեան արժանի ըլլան։ Այս պատճառով անդամական քննութիւնը ընտրութենէն առաջ կատարուելու է։

21. Հակառակ ժողովի կամքին՝ ոևէ օտարական ներկայ գտնուելու իրաւունք չունի։

22․ Բոլոր ժողովներ պէտք է վարուին փարլամէնթական կանոններու համաձայն։ Ուր մասնաւոր պարագաներու համար սեփական կանոններ իւրացուած են, հոն փարլամէնթական ընդհանուր կանոնները նոյն կէտերուն վրայ անազդեցիկ կը մնան։

23․ Ոեւէ կանոն կառավարական օրէնքի հակառակ ըլլալու չէ։

# Գլուխ Ա

## ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

**24**· *Ժողովավարական կանոններու վրայ խօսելէ առաջ, ուշադրութեան առնենք կարգ մը նախնական խնդիրներ որոնք կարեւոր են ժողովի կանոնաւորութեան և արդիւնաւորութեան համար։*

## ՄԱՍՆ Ը

### *ՔՈՐԸՄ* (Quorum)

**25**· *Ամէն ժողովի մէջ պէտք է որոշ թուով անդամներ ներկայ գտնուին, որպէսզի ժողովը կարենայ օրինաւորապէս գործի ձեռնարկել։ Պահանջուած այս թիւը կը կոչուի «քորըմ»։*

**26**· *Քորըմը կրնայ որոշուիլ օրէնքի կամ նախորդ սովորութեան համաձայն։ Սակայն սովորաբար ժողովը ինք կ'որոշէ թէ քանի անդամ պէտք է ներկայ ըլլայ որպէսզի նիստը օրինական նկատուի։ Ուր քորըմ սահմանուած չէ, հոն ժողովի մեծամասնութիւնը կը նկատուի քորըմ։*

**27**· *Ներկայացուցչական, գաւառական, քաղաքային, կառավարական և կորպորացիական ժողովներու մէջ քորըմ կը կազմէ մեծամասնութիւնը։*

**28**· *Թաղային, հասարակական, բաժնետէրերու, գիւղային և այս կարգի կամաւոր և ոչ պաշտօնական ժողովներու մէջ քորըմ չի նկատուիր։*

**29**. *Ուրիշ ոեւէ ժողովի մէջ, մասնաւոր օրէնքի կամ կանոնի մը տրամադրութեան համաձայն, քորըմը կրնայ կազմել ոեւէ թիւ, ըլլայ մեծամասնութիւն կամ փոքրամասնութիւն։*

**30**. *Կան պարագաներ, երբ բոլոր անդամները անպատճառ ներկայ ըլլալու են քորըմը կազմելու համար, ինչպէս, երբ օրէնքը կ'ստեղծէ ժողով կամ կոմիտէ մը մասնաւոր խնդիր մը քննելու համար, և երբ բոլոր անդամներու դատողութիւնն ու խորհրդակցութիւնը անհրաժեշտ է։*

**31**. *Երկու տեսակ քորըմ կայ.*

*ա)* **ՆԵՐԿԱՑԻՑ ՔՕՐԸՄ**, *որով կը պահանջուի քորըմի ներկայութիւնը ժողովի բացման ատեն և անոր աւողութեան միջոցին։ Այս կանոնին կը հետևին Ամերիկեան և Ֆրանսական ներկայացուցչաց ժողովները։*

*բ)* **ՔՈՒԷԱՏՈՒ ՔՕՐԸՄ**, *կը պահանջուի որ ոչ միայն քորըմը ներկայ ըլլայ այլ նաև քուէարկէ։ Ուր քորըմը ներկայ է և մի քանիներ չեն քուէարկեր, ձեռնպահ մնացողներու թիւը կ'աւելցուի մեծամասնութեան քուէի թիւին վրայ, որովհետև այս կանոնին համաձայն քորըմը անպատճառ քուէարկելու է։*

**32**. *Գերագոյն ժողովներու մէջ քորըմի բացակայութեան՝ ժողովը կը յետաձգուի օրէ օր (տես թիւ* **221**)։ *Ընդհանրապէս բացականեր սըրճընթ ավ արմզի* (sergeant of arms) *միջոցով ժողովի կը կանչուին, եւ երբ հաստատուի թէ բացակայութիւնը անհոգութեան արդիւնք է՝ պատիժ կը տնօրինուի։ Նոյն մէթոտով ժողովի կը կանչուին անոնք որ՝ առանց նախագահին թոյլտուութեան ժողովը կը ձգեն ու կը հեռանան, և որուն հետևանքով քորըմը կը բացակայի և ժողովը ստիպեալ կը դադրի (տես թիւ* **57**)։

**33**. *Ստորադաս ժողովներու մէջ նոյնիմաստ կանոններ կարելի է տնօրինել։*

**34**. Նախագահը ժողովը բանալէ առաջ պէտք է ստուգէ քօրըմի ներկայութիւնը։

**35**. Երբ ժողովի ընթացքին անդամի մը մէկնումով քօրըմը բացակայի, ոեւէ անդամի մը պարտականութիւնն է նախագահին ուշադրութիւնը հրաւիրել այս իրողութեան, որուն վրայ նախագահը պարտի ժողովը դադրեցնել։

# ՄԱՍՆ Բ

## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

**36**. Ընկերութիւններ կամ ժողովներ (assembly) իրենց սահմանադրութեամբ կամ կառավարական արտօնագրով է որ կեանք և գոյութիւն կ'ունենան։

**37**. Սահմանադրութիւնը խմբագրուելու է կարելի եղածին չափ ամփոփ։ Պարունակելու է միայն էական կէտեր, որոք բացարձակապէս կարևոր են կազմակերպութեան ոգի տալու համար։ Ընդհակառակը, կանոնագրեր կրնան ըլլալ ճոխ և մանրամասն, եւ պարունակելու են ամէն ընթացք որ ժողովը պարտի առնել գալիք կամ պատահելիք տարբեր վիճակներու և պարագաներու մէջ (տես թիւեր **5**, **17**, **360**)։

# ՄԱՍՆ Գ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**38**. Ժողովներ սոսկ կազմակերպուած ըլլալնուն հետեւանքով՝ ենթակայ են փարլամէնթական կանոններու տրամադրութիւններուն։ Այսուհանդերձ ժողով մը կարող է իւրացնել իրեն յատուկ կանոնագրութիւն մը, և կամ նիստերու ընթացքին կարեւոր կանոններ տնօրինել և ընդունիլ զանոնք մասնաւոր քուէարկութեամբ (տես թիւեր **17**, **361**)։

**39**· *Դրուած կանոն մը կրնայ ջնջուիլ կամ առկախուիլ ժողովին միաձայն քուէով, իսկ փոփոխուիլ՝ մեծամասնութեան քուէով։*

**40**· *Երբ ուէ կանոն մը անտեսուի կամ չի յարգուի՝ անդամներու պարտականութիւնն է նախագահին ուշադրութիւնը անոր վրայ հրաւիրել, որմէ ետք նախագահն առանց վիճաբանութիւն արտօնելու անյապաղ ուժ տալու է սոյն կանոնին։*

**41**· *Շատ ուշ է փոխել կամ յետաձգել կանոն մը, որուն գործադրումը կը պահանջուի։*

# ՄԱՍՆ Դ

## ՆԻՍՏ

**42**· *Ժողովի մը կանոնաւոր գումարումը կը կոչուի «նիստ», եթէ մէկ նիստով գործը չի լմննայ, ուրիշ նստաժամ մը որոշելով յայտարարելու է։ Երբ ժողովը իր գործը լմնցնէ և ցրուի, կ'ըսուի, «ժողովը կ'ելնէ»։*

# ՄԱՍՆ Ե

## ՈՐՈՇՈՒՄ

**43**· *Գումարումներու մէջ խնդիրներ կ'որոշուին ներկաներու մեծամասնութեան քուէով, կանոններ կըրնան տնօրինուիլ, այսուհանդերձ, որ անոնք որոշուին քուէներու առաւելութեամբ* * (*տես թիւ* **359**)։

---

* *Քուէի մեծամասնութիւն և քուէի առաւելութիւն տարբեր իմաստ ունին։ Օրինակ, ժողովի մը անդամները 20 հատ են, որով մեծամասնութեան թիւն է 11, Ա. Բ., Գ. ընտրելի են պաշտօնի մը։ Այդ պաշտօնի ընտրութեան համար մեծամասնութեան քուէն պէտք է։ Ա. կ'ստանայ 8 քուէ, Բ. կ'ստանայ 7 քուէ և Գ 5 քուէ։ Արդ թէև Ա առաւելագոյն քուէն վաստկած է, սակայն այդ քուէն մեծամասնութեան քուէն չըլլալով ընտրութիւնը կարելի չէ։*

# Գլուխ Բ

## ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ

44. *Կարեւոր պաշտօնեաներն են.*
*Նախագահ կամ ատենապետ և դեր-ատենապետ,*
*Քարտուղար կամ ատենադպիր և դեր-ատենադպիր,*
*Գանձապահ* (treasurer) *և գանձագիր* (cashier)։

45. *Ասոնք կ'ընտրուին և կը հրաժարեցուին ժողովի կամքին համաձայն։ Ասոնց ընտրութիւնը քուէից մեծամասնութեամբ կը կատարուի։ Քուէի առաւելութեամբ ընտրուողներու գործը առարկելի է և անվաւեր* (*տես թիւ* **16**)։

*ԾԱՆՕԹ. — Գերագոյն ժողովներու պաշտօնեաներ կը կոչուին նախագահ և գրագիր* (president and clerk), *իսկ սովորական ժողովներունը՝ ատենապետ և ատենադպիր* (chairman and secretary)։

*Նախագահ և ատենապետ բառերու տեղ յաճախ կը գործածուին «աթոռ» և «ատեան» բառերը։*

## ՄԱՍՆ Ա

### ՆԱԽԱԳԱՀ

46. *Նախագահը կամ ատենապետը ժողովին վարչական պետն է։ Ան ըլլալու է միշտ զգաստ և գործելու է ամէնաուշիմ ընթացքով։ Ըլլալու է վայելչակազմ, առողջ, համբերատար, անկողմնակալ և ծանօթ փառլամէնթական կանոններու։ Ունենալու է բարձր, առնական ձայն և ժողովավարութեան կորով։*

47. *Այս պաշտօնը խիստ կարեւոր է, որովհետեւ ժողովին յաջող ելքը անկէ կախում ունի։*

**48.** Անոր պարտականութիւններն են ։

ա) Որոշուած ատենին իր աթոռը գրաւելով ժողովը կարգի հրաւիրել ։

բ) Ներկաները ստուգել և քորըմը յայտարարել ։

գ) Նախորդ ժողովի ատենագրութիւնը կարդացնելով՝ վաւերացնել տալ ։

դ) Ժողովին յայտարարել տեսնուելիք գործերը գործակարգին համաձայն ։

ե) Ուղերձել կամ խօսիլ ժողովին միշտ յոտընկայս ։

զ) Ընդունիլ անդամներէն եղած ամէն առաջարկ, հարցում և այլ և ներկայացնել ժողովին, կամ, իհարկին, պատասխանել ուղղակի ։

է) Ընդունիլ բերանացի կամ գրաւոր պատգամներ և հաղորդակցութիւններ և յանձնել ժողովին ։

ը) Վաւերացնել ժողովին հրամաններն, որոշումներն ու անցուցած օրէնքները իր ստորագրութեամբ ։

թ) Օրինազանցները կարգի հրաւիրել, և չտկել սխալ ընթացքներ ժողովավարութեան ատեն ։

ժ) Վիճաբանողները նիւթին շուրջ եւ կարգի սահմանին մէջ պահել ։

ի) Հսկել ժողովի կարգին և կանոնին առանց անձի խտրութեան, նկատի ունենալով թէ ինք և բոլոր միւս անդամները հաւասարներ են ։

լ) Ժողովին և անհատի իրաւունքները պաշտպանել աներկիւղ և զօրաւոր ձեռքով ։

խ) Ուէ քայլ փարլամէնթական կանոններու համաձայն առնել, միշտ նկատի ունենալով թէ կանոններու և՛ բանաձևերու մեծ նպատակն է ծառայել ժողովի կամքին և զայն յառաջացնել և ոչ թէ ճնշել, դիւրացնել և ոչ թէ խափանել անոր խորհրդորոշ նպատակին արտայայտութիւնը ։

ծ) Ներկայացնել ժողովը, անոր պաշտպան հանդիսանալ և հնազանդիլ անոր կամքին ։

49· Նախագահի բացակայութեան դեր-նախագահն աթոռը դրաւելու է։ Դեր-նախագահի բացակայութեան՝ ժողովը առժամեայ ատենապետ մը կարող է ընտրել քարտուղարին առաջնորդութեամբ։
50· Նախագահն կարող է իր աթոռը՝ դեր-նախագահին կամ, անոր չգոյութեան, ուրիշի մը թողուլ, որպէսզի ինք կարենայ բացակայիլ, և կամ, մասնաւոր պարագաներու տակ, կարենայ վիճաբանութեան մասնակցիլ և քուէարկել (տես թիւ 277)։ Իսկ եթէ ժողովը նախագահին ընտրած պաշտօնէին չի հաւնիր՝ կը մերժէ և առժամեայ ատենապետ մը կ'ընտրէ։
51· Նախագահը կրնայ քուէարկել այն ատեն երբ ժողովը երկու հաւասար մասերու բաժնուած է։

# ՄԱՍ Բ

## ԳՐԱԳԻՐ

52· Ժողովին երկրորդ պաշտօնեան է գրագիրը։ Ան կրնայ ընտրուիլ բերանացի կամ գրաւոր քուէով։ Երբեմն այս պաշտօնեաէն զատ կ'ընտրուի քարտուղար մը։ Ասոնց բացակայութեան ժողովը կարող է ընտրել առժամեայ գրագիր մը։
53· Գրագիրը ծանօթ ըլլալու է փարլամէնթական կանոններու և գործելու է խիստ զգուշութեամբ։ Ունենալու է յստակ առոգանութիւն, ձայն և սահուն գրիչ։
54· Գրագրի պարտականութիւններն են.

ա) Ներկայ-բացակայի ցանկը կարդալ և նախագահին տեղեկացնել քօրըմի ներկայութիւնը։

բ) Նախորդ ժողովի արձանագրութիւնները կարդալ աթոռի հրամանին համաձայն։

գ) Արձանագրել քուէները,

*դ) Կոմիտէներու յայտնել իրենց ընտրութիւնն ու պարտականութիւնը, վաւերացնել անոնց պաշտօնը առանձինն կամ նախագահին ստորագրութեան ընկերակցութեամբ։*

*ե) Արձանագրել ժողովատետրին մէջ ժողովին մէջ տեղի ունեցած ամէն ինչ իրենց կարգով և ելքով։*

*զ) Պահպանել ժողովին պատկանող ամէն գոյք, և երբեմն կարդալ ժողովին պաշտօնական գրութիւններ, աթոռի հրամանին համաձայն (տես թիւ* **236**)։

**55**. *Գրագրի բացակայութեան դեր-գրագիրը անոր տեղը գրաւելու է։*

**56**. *Այս պաշտօնեան կրնայ վիճաբանիլ իր պաշտօնին չվերաբերող ոևէ խնդրի վրայ, բայց կրնայ քուէարկել այն ատեն միայն երբ ժողովը փափաք յայտնէ։*

# ՄԱՍՆ Գ

## ՈՒՐԻՇ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ

**57**. *Ժողովի մը միւս պաշտօնեաներն են՝ գանձապահ և երբեմն ալ գանձագիր։ Ասոնցմէ զատ սահմանադրական ժողովներու մէջ կ՚ընտրուին սրճընթ ավ արմզ որուն գլխաւոր պաշտօնն է օգնել նախագահին, կարգապահութեան հոգ տանիլ, և յանցաւորները պատժել, կ՚ընտրուին նաև թոշակաւոր նամակաբեր և դռնապան (տես թիւ* **32**)։

# Գլուխ Գ

## ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԻՐԱՒՈՒՆՔ

58. *Ժողովի մը անդամներու իրարու հանդէպ ունեցած պարտականութիւններն ու իրաւունքները ճշգրիտ հաւասարութեան վրայ հիմնուած են։ Ոեւէ անդամ որչափ որ ալ խոնարհ ըլլայ, իրաւունք ունի առաջարկելու, վիճաբանելու, առարկելու և իրաւունքի պաշտպանութիւն պահանջելու։ Միւս անդամներուն պարտականութիւնն է այնպիսի բարեկիրթ ընթացք մը ունենալ որ մի գուցէ ոեւէ ընկերոջ հաւասարութեան իրաւունքը բռնաբարուի (տես Թ.* **222, 297**)։

59. *Ժողովի մը անդամները համեստախօս և պարկեշտաբարոյ ըլլալու են, ոչ միայն որովհետև իբր հանրային պաշտօնեայ կ՚ակնկալուի որ այդպէս վարուին, այլև որովհետև ժողովին կանոնաւորութեան և յաջող ելքին համար անհրաժեշտ պէտք մըն է ան։ Ուրեմն ընդհանուր կանոն մըն է, թէ ոեւէ անդամ իրաւունք չունի վրդովել անհատ մը կամ ամբողջ ժողովը՝ սուլելով, հազալով, թքնելով, խօսելով, փսփսալով, ուրիշ մը ընդմիջելով, նախագահին եւ խօսողին մէջտեղէն անցնելով, սրահին մէջ պտըտելով, սեղանին վրայէն թուղթ վերցնելով, ևայլն (տես Թիւ* **283**)։

60. *Յարձակում, սպառնալիք, կռիւի հրաւէր խիստ ծանր յանցանքներ են։*

61. *Համեստազեղծմանց և կարգաբեկութեանց ատեն, անդամներու իրաւունքն է աթոռին պարտականութիւնն ու ժողովին ուշադրութիւնը անոր հրաւիրել (տես Թիւեր* **229, 232**)։

*62. Նախագահը յանցանքը կը յայտնէ։ Ցանցաւորը իր չքմեղանքը կը խօսի և ժողովէն կը հեռանայ, անոր բացակայութեան ժողովը որոշումը կը կայացնէ։*

*63. Եթէ թեթև յանցանքներու պարագային ժողովին թոյլտուութեամբ յանցաւորը շարունակէ ներկայ գտնուիլ, ժողովին մասնակցելու չէ մինչև որ իր պատիժը կրէ։*

*64. Պատիժները կրնան ըլլալ հրապարակաւ յանցանքը խոստովանիլ, ներում խնդրել, պաշտօնապէս սաստել, խստիւ այպանել, առժամապես վտարել և ժողովէն արտաքսել։*

*65. Կարգապահութեան և իրաւունքներու պաշտպանումի պահանջը պէտք է ըլլայ ճիշդ յանցանքին պատահած ատենը կամ անմիջապէս վերջը, առանց նկատի առնելու շրջապատող պարագաները։*

# Գլուխ Դ

# ԿՈՄԻՏԷՆԵՐ

## ՄԱՍՆ Ը

### ՊԱՇՏՕՆ

**66**· Աշխատանքի դիւրացման համար, ժողովներ, գործի բաժանման սկզբունքին վրայ, կը կազմակերպեն կոմիտէներ և կը յանձնեն անոնց գործի նախապատրաստական մասեր քննելու, պարզելու, ձևակերպելու և որոշելու համար (տես Թիւ **132**)։

**67**· Հինգ տեսակ կոմիտէ կայ·

Ընտրեալ, կանգուն, խառն, քոնֆէրանս և լման կոմիտէներ։

ա) *Ընտրեալ կոմիտէ*· — երբ կոմիտէ մը կ'ընտրուի մասնաւոր խնդիր մը քննելու համար (տես Թիւ **326**)։

բ) *Կանգուն կոմիտէ*· — Երբ կոմիտէ մը արդէն ընտրուած է որոշ տեսակէ գործ մը ընելու, կամ խնդիրներ քննելու համար։

գ) *Խառն կոմիտէ*· — Երբ կ'ընտրուի օրէնսդրական մարմնի մը տարբեր ճիւղերու փոխադարձ հաւանութեամբ (տես Թիւ **225**)։

դ) *Քոնֆէրանսի կոմիտէ*· — Ուր օրէնսդրական մարմնի մը ճիւղերուն (Senate and House) կողմէ ընտրուած կոմիտէներ կը միանան ու կը խորհրդակցին այն ճիւղերու միջև դժուարութիւն յարուցանող խնդիրներու վրայ և կը տեղեկագրեն արդիւնքը իրենց պատկանող ժողովներուն (տ. **327**)։

*ե) Լման կոմիտէ.— Այս անունը կը տրուի երբ կոմիտէն կազմուած է ժողովի բոլոր անդամներէն։*

68. *Կոմիտէներ կը գործեն անկախ և երբեմն ալ մասնաւոր գործելակերպի հրահանգներով։ Իրաւամբ ըսուած է թէ կոմիտէներ ժողովին աչք և ականջն են, որուն վրայ, մասնաւոր պարագաներու տակ, կարելի է աւելցնել թէ անոր ձեռքն ու գլուխն ալ են, որովհետև այս մարմիններու միջոցաւ տեսնուած գործեր կը կատարուին փութով, գոհացուցիչ կերպով, և գրեթէ միշտ արդիւնաւոր են։*

69. *Կոմիտէի մը գործի իշխանութիւնը կրնայ փոխուիլ, աւելնալ և պակսիլ, մասնաւոր հրահանգներով։*

# ՄԱՍՆ Բ

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆ

70. *Կոմիտէ մը ընտրելու գործին մէջ առաջին որոշելիք բանը անոր անդամներու թիւն է, ասոր համար նախ առաջարկելու է բարձր թիւ մը, երբ մերժուի աւելի փոքր և փոքր թիւ մը մինչև որ ժողովը հաւանութեան քուէ տայ* (*տես թիւ* **190**)։ *Թիւը որոշելէ ետք կը մնայ ընտրելու կերպը, որուն չորս կերպ կայ.*

*ա) Ընտրութիւն նախագահին կողմէ,*
*բ) Ընտրութիւն որոշումով* (resolution),
*գ) Ընտրութիւն գրաքուէով* (ballot),
*դ) Ընտրութիւն քուէով։*

71. *Առաջին պարագային, որ ամենէն գործնականն ու յանձնարարելին է, նախագահը կ'ընտրէ անդամները և ժողովին կը յայտարարէ կոմիտէն կազմուած։*

72. *Երկրորդ կերպ. կոմիտէն կ'ընտրուի որոշումով, որոշումը առաջարկողը կը յայտնէ կոմիտէի անդամները։*

**73**· *Երրորդ կերպը, ժողովը կ'ընտրէ կոմիտէն, առանձինն կամ խմբովին, մեծամասնութեան գրաքուէով։*

**74**· *Չորրորդ կերպը, իւրաքանչիւր անդամի համար անուանում* (nomination) *և բերանացի քուէարկութիւն կը կատարուի։*

**75**· *Երբեմն նախագահը կ'անուանէ անդամներ և ժողովը կը վաւերացնէ, երբեմն ալ ժողովը նախորդ կոմիտէ մը կը վերակենդանացնէ, կամ կանգուն կոմիտէի մը կուտայ նոյն գործի իշխանութիւնը։*

**76**· *Անոնք որ կոմիտէի յանձնուելիք գործին համամիտ չեն, պէտք չէ որ կոմիտէի անդամ ընտրուին, ընդհակառակը խնդիրը առաջարկողը կոմիտէի անդամ ընտրուելու առաջին իրաւունքն ունի։*

**77**· *Ընտրութենէն ետք ժողովի գրագիրը, կոմիտէի անդամներու ցանկը, անոր իշխանութիւնը և տեսնելիք գործը պարունակող վաւերաթուղթ մը կը յանձնէ կոմիտէի ամենէն առաջ ընտրուած անդամին, իսկ անոր բացակայութեան ուրիշ անդամի մը* (*տես* **54**)։

## ՄԱՍՆ Գ.

### ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ ԵՒ ԸՆԹԱՑՔ

**78**· *Ընտրուած առաջին անդամը կոմիտէի ատենապետը կը նկատուի, սակայն կոմիտէն լի իշխանութիւն ունի ընտրել իր պաշտօնեաները։*

**79**· *Կոմիտէին կարելի է հրահանգ տալ որ գումարուի այնինչ ատեն այնինչ տեղ, և գործը լմնցնէ այնինչչափ ատենի միջոցին, ինչպէս նաև գործի սկսիլ բուն իսկ ժողովի պահին։*

**80**· *Ոևէ հրահանգի չգոյութեան պարագային կոմիտէն կը վարէ իր գործերը անկախօրէն, բայց չի կրնար նիստ գումարել ժողովի ատեն, ոչ ալ նիստը շարունակել երբ ժողովը կ'սկսի։*

**81**․ Գումարումի ատեն կոմիտէի քորըմը (մեծամասնութիւն) ներկայ ըլլալու է և գործելու է փարլամէնթական կանոններու համաձայն։

**82**․ Կոմիտէն իրեն յանձնուած խնդրի մը նիւթը կամ անոր տիտղոսը փոխելու իրաւունք չունի։

**83**․ Հրահանգի բացակայութեան, կոմիտէն ազատ է որոշել իր նստաժամն ու տեղը, և յետաձգել գործը նիստէ նիստ մինչև որ լմննայ։

**84**․ Երբ կոմիտէն իրեն տրուած հրահանգին չի հնազանդի, իր պաշտօնը կը վերջանայ։ Կրնայ շարունակել գործը, այսուհանդերձ, վերածին իշխանութեամբ։

**85**․ Նիստին մէջ խօսուած անվայել և անկարգ խօսքեր արձանագրելով ժողովին ներկայացնելու է։ Կոմիտէն պատժելու իշխանութիւն չունի։

**86**․ Խորհրդածութեան առարկայ եղող թուղթը կրնայ պատրաստուած ըլլալ կոմիտէէն կամ յանձնուած ըլլալ ժողովին կողմէն։ Երկու պարագային ալ, նախ ատենապետը կը կարդայ գրութիւնը, և յետոյ ատենադպիրը կը կարդայ կամաց կամաց, կանգ առնելով ամէն պարբերութեան վերջ, քննադատութեան, բարեփոխումի և սրբագրութեան համար։

**87**․ Երբ գրութիւնը պատրաստուած է կոմիտէին կողմէն, կոմիտէն կրնայ գծել, աւրել, աւելցնել ևն․, և յետոյ մաքուրը ընդօրինակել։ Բայց երբ ժողովին յանձնուած է սոյն գրութիւնը, այն ատեն ամէն փոփոխում տարբեր թուղթի վրայ ըլլալու է։

**88**․ Կոմիտէն իր գործը լմնցնելէն ետք՝ արդիւնքը մաքուր վիճակի մէջ տեղեկագրելու է ժողովին, իր ատենապետին կամ անոր փոխանորդ անդամի մը միջոցով։

# ՄԱՍՆ Դ

## ՏԵՂԵԿԱԳՐՈՒԹԻՒՆ

89. *Կոմիտէի տեղեկագրութեան ժողովին մատուցանելիք կերպն է.*

*Կոմիտէի ատենապետը կամ անոր փոխանորդը կը ներկայանայ ժողովին և կը ծանուցանէ թէ կոմիտէի տեղեկագիրը պատրաստ է մատուցուելու։*

90. *Եթէ ժողովը ատեն ունի՝ կ'ընդունի զայն, եթէ ոչ կը յետաձգէ ուրիշ ատենի մը։*

91. *Տեղեկագիրը ընդունելէն ետք՝ ժողովը կրնայ իւրացնել զայն ամբողջութեամբ կամ մասամբ, կամ պէտք եղած փոփոխումներն ընելէ վերջ, և կամ բոլորովին մերժել։*

92. *Այս տեղեկագրի իւրացումը քուէարկութեամբ կը կատարուի։ Նախ բարեփոխումները նկատի կ'առնըւին և յետոյ մայր գրութիւնը ամբողջութեամբ կը որդեգրուի։*

93. *Տեղեկագրութեան ընդունուելէն յետոյ, կոմիտէն ինքնին* (ipso facto) *կը լուծուի։ Անոր իշխանութիւնը կարելի է վերկենդանացնել նոյն խնդրոյն վերաքըննութեան համար, մասնաւոր քուէարկութեամբ։*

94. *Երբ ընդունուած տեղեկագիր մը վէրյանձնուի՝ նախորդը չեղեալ կը համարուի։*

*Տեղեկագրութիւններ երեք տեսակ կրնան ըլլալ.*

*ա) Տեղեկագրել տրուած խնդրի մը վրայ՝ միայն իրողութիւն և դատողութիւն, առանց վերջաբան որոշումի։*

*բ) Տեղեկագրել — իրողութիւն, դատողութիւն, և որոշում,*

*գ) Տեղեկագրել առանց նախաբանական մասերու, միայն որոշում։*

95. *Երբ տեղեկագիր մը ժողովէն իւրացուի, անայլայլ կը նկատուի իբր ժողովին բուն գործը։*

# ՄԱՍՆ Ե

## ԼՄԱՆ ԿՈՄԻՏԷ

**96**. Մասնաւոր պատճառներով երբեմն ժողովը պէտքը կ'զգայ խնդիրներ քննել իբր կոմիտէ։ Այս նպատակին համար ժողովը կոմիտէի կը վերածուի և կը գործէ իբր կոմիտէ։

**97**. Ժողովին կոմիտէի վերածուելու կերպը հետևեալն է.

Անդամ մը կ'առաջարկէ որ այնինչ խնդիրը քննելու համար ժողովը լման կոմիտէի վերածուի։ Առաջարկը կ'ընդունուի։ Նախագահը անդամներէն մին կոմիտէի ատենապետ անուանելով՝ կոմիտէն կազմըւած կը յայտարարէ և իր աթոռէն վար կ'իջնէ՝ կոմիտէական ժողովին մասնակցելու իբր հասարակ անդամ մը։

**98**. Կոմիտէն կը վաւերացնէ ատենապետի անուանումը և ժողովին գրագիրը իբր ատենադպիր ընդունելով գործի կ'սկսի և կը յառաջանայ սովորական կոմիտէի մը պէս։

**99**. Նախագահը միշտ ներկայ գտնուելու է որ եթէ կոմիտէն ելնէ, անմիջապէս իր աթոռը գրաւելով ժողովը վերսկսի։ Կոմիտէին քորըմը ժողովին քորըմն է։

**100**. Կոմիտէական նիստին մէջ գործուած յանցանքներ ժողովին տեղեկագրուելու են (տես թիւ 85)։

**101**. Ժողովի մը իբր կոմիտէ գործելուն առաւելութիւնները. —

ա) Լման կոմիտէի նիստին մէջ, նախորդ հարց, սեղանին վրայ մնալ և յետաձգումի առաջարկներ կարելի չէ ընել։ Նիստը յառաջանալու և խնդիրը որոշելու է (տես թիւեր 127, 142)։

բ) Նիստին մէջ ամէն անդամ ազատ է խօսիլ քանի անգամ որ ուզէ, մինչդեռ ժողովին մէջ անդամ մը մէկ անգամ միայն կրնայ խօսիլ։

գ) Լման կոմիտէն ենթակոմիտէ չի կրնար կազմել, ինչ որ կրնան ընել միւս կոմիտէներ։

դ) Նիստին մէջ նախագահը վիճաբանութեան կրնայ մասնակցիլ։

102. Կոմիտէն գործը լմննալէն ետք, կ'ելնէ, որմէ ետք ժողովը կը վերսկսի, և կոմիտէն իր գործը կը տեղեկագրէ ժողովին։ Ժողովը կ'ընդունի տեղեկագիրը նոյն ատեն, կամ կը յետաձգէ ուրիշ ատենւայ մը։

103. Երբ կոմիտէն իր գործը չի լմնցնէ, ելնելէն առաջ կ'որոշէ ուրիշ նիստ մըն ալ ունենալ։ Այս պարագային ատենապետին՝ կոմիտէին գործը ժողովին տեղեկագրած ատեն կ'աւելցնէ նաև թէ կոմիտէն իր գործը լմնցուցած չըլլալով՝ թոյլտուութիւն կը խնդրէ ուրիշ անգամ մըն ալ նստելու։ Ժողովը անմիջապէս կ'որոշէ թէ այնինչ ատեն մըն ալ նիստը կրնայ դարձեալ գումարուիլ։

104. Հասարակ ժողովներ լման կոմիտէի պէտք չունին. աս աւելի օրէնսդրական ժողովներու յատուկ է։

# Գլուխ Ե

## ԳՈՐԾ

**105**· *Ժողովը գործի կ'սկսի անդամի մը կողմէ եղած բերանացի կամ գրաւոր առաջարկով մը* (motion)։ *Առաջարկողը ոտքի կանգնելով աթոռին ուղղելու է անոր տիտղոսով· «Տէր, կամ Պարոն Նախագահ»։ Նախագահը զայս լսելով կ'արտասանէ առաջարկողին անունը, ինչպէս, «Պարոն Գուրգէն», կամ, եթէ անունը չի գիտեր, «Հրամմեցէք պարոն», կամ միայն «Հարցո՞ւմ» ըսելով առաջարկողին կը նայի, որմէ յետոյ անդամը ազատ է խօսիլ և իր առաջարկը ընել։*

**106**· *Երբ քանի մը անձինք կանգնին և աթոռին ուղղեն, հոս հարց մը երևան կուգայ թէ ո՞վ առաջ խօսելու իրաւունքն ունի։ Ասոր պատասխանն է, ան՝ որ է՛ն առաջ դետինը բռնեց *։ Բայց երբ այս մի քանի անձինք ճիշդ միևնոյն ատեն գետին բռնեն, այն ատեն նախագահը իր դատողութեան համաձայն խօսելու իրաւունքը մէկին կամ միւսին կուտայ անոր անունը տալով կամ ուրիշ նշանով մը։ Եթէ հոս կողմնապահութեան խնդիր կամ ուրիշ դժուարութիւններ ծագին խնդիրը ժողովին կը ներկայացուի, որն եթէ մերժու նախորդ առաջարկողը իր խօսքը կը շարունակէ* (*տես թիւեր* **225**, **278**)։

**107**· *Օտարականներու կողմէ խնդիրք կամ աղերսագիր անդամի մը միջոցաւ ժողովին ներկայացնելու է։ Ներկայացնող անդամը նախ պարտի ինք կարդալ սոյն գրութիւնը և ապա մատուցանել իր ստորագրութեամբ և հաւանութեամբ։*

---

* *«Գետին բռնել» կը նշանակէ ոտքի կանգնիլ և աթոռին ուղղել։*

**108·** *Անդամը նախ ժողովին ուշադրութիւնը կը հրաւիրէ թէ այնինչ խնդրին նկատմամբ աղերսագիր մը ունի և մատուցանել կ՚ուզէ՝ ժողովը ընդունելու հաւանութիւն եթէ տայ՝ զայն կը յանձնէ նախագահին։ Սովորաբար նախագահը աղերսներ կ՚ընդունի առանց կանխաւ ժողովին կամքը հարցնելու, բայց երբ ժողովը այս ընթացքին առարկէ, ժողովին կամքը յարգուելու է։*

**109·** *Աղերսագրին ընդունուելէն յետոյ ժողովը յարմար սեպած ատեն զայն կը քննէ ու կ՚որոշէ կամ կը մերժէ։*

**110·** *Առաջարկներ յստակ և յարմար բանաձևով ըլլալու են։*

**111·** *Բոլոր գլխաւոր առաջարկներ գրաւոր ըլլալու են, ըստ կանոնի կամ ըստ աթոռի կամքին։*

**112·** *ԵՐԿՐՈՐԴԵԼ· Սովորութիւն է որ առաջարկ մը ըլլալէն ետք ուրիշ մը այդ առաջարկը երկրորդէ։ Այս սովորութիւնը հիմնուած է սա սկզբունքին վրայ, թէ ժողով մը կ՚ուզէ զբաղիլ միայն կարևոր խնդիրներով, որով եթէ առաջարկ մը անկարևոր է, և միայն ժամանակի վատնում պիտի պատճառէ, և եթէ ժողովը այդ առաջարկէն բնաւ չախորժիր, բընականաբար սոյն առաջարկը երկրորդող մը չի գըտնուիր և նախագահը զայն աննկատ կը թողու, որովհետև ան պարտի ժողովին ներկայացնել միայն այն առաջարկները որ երկրորդուած են։*

**113·** *Ներկայացուցչական ժողովներու մէջ, այսուհանդերձ, երկրորդելու սովորութիւնը վերցուած է, և միայն բացառիկ պարագաներու տակ կը գործածուի։*

**114·** *Գերագոյն ժողովներու մէջ սովորութիւն է նաև որ կարգի, իրաւունքի և առանձնաշնորհի ևայլնի շուրջ դարձող առաջարկներ անմիջապէս ուշադրութեան կ՚առնուին, առանց երկրորդումի, որովհետև*

առնք ուղղակի ժողովի վարկին և անոր շահին կամ զարգացման կը ծառայեն։

115․ Ուրեմն ըստ սովորութեան նախագահը ժողովին կը յանձնէ միայն այն առաջարկները որ երկրորդուած են։

116․ Երկրորդուած և ժողովին յանձնուած առաջարկ մը մատուցանողին քոնթրոլէն դուրս ելած ըլլալով՝ կարելի չէ այլևս զայն յետս կոչել առանց ժողովին թոյլտուութեան։

117․ Ժողովը մէկ անգամէն մէկէ աւելի առաջարկ չի կրնար ընդունիլ, և ուրեմն, եթէ ժողովը իր առջև առաջարկ մը ունի ուրիշ մը ևս կարելի չէ մատուցանել, բացառութիւն ըլլալով այն պարագան ուր մատուցուած առաջարկը երկրորդական կամ նախադաս առաջարկ մը ըլլայ։

# Գլուխ Զ

## ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

**118**. *Ժողովը գործի առաջնորդող միակ միջոցը առաջարկն է։ Ոևէ ընկերութիւն, անհատ կամ ներկայացուցիչ իր պէտքը, նպատակը կամ փափաքը ժողովին կրնայ ներկայացնել միայն առաջարկի ձևով։ Մատուցուած առաջարկներ ամբողջովին ժողովին իրաւասութեան տակ ըլլալով՝ ան կը քննէ, կը դատէ զանոնք և ըստ այնմ որոշման կը յանգի թեր կամ դէմ։*

**119**. *Ուրեմն, ամենէն էական բանը որ պէտք է գիտնալ և սերտել, առաջարկը և անոր գործածութեան ու մատուցման կերպն է։*

**120**. *Առաջարկներ երկու տեսակ են.*

*Սկզբնական կամ գլխաւոր և երկրորդական։*

*Սկզբնական առաջարկը խնդրի մը համար առաջին անգամ եղած առաջարկն է, որուն վրայ ժողովը վիճաբանելով և խորհրդածելով եզրակացութեան մը կը հանգի (տես թիւ* 255)*։*

**121**. *Ժողովը զտումի բով մըն է ուրկէ պիտի անցնի առաջարկը։ Այս բովէն անցնելու ատեն ան կ՚ենթարկուի բազմապիսի ձևափոխումներու, մինչև որ ժողովը յաջողի զայն դնել դիրքի մը մէջ որ նկատուի պատշաճ և նպատակայարմար։*

**122**. *Ժողովային այս յետախաղացութեանց համար փարլամէնթական մարմիններ ստեղծած են ընթացք և բանաձևներ, որոնք կը գործածուին իբր զտիչ գործիք և որք կը ճանչցուին «երկրորդական առաջարկներ» ընդհանուր անունով, որոնց վրայ պիտի խօսինք առանձին առանձին։*

# ՄԱՍՆ Ա

## ՆԿԱՏՈՒՄ

**123**· Գլխաւոր առաջարկ մը կ'ուղղուի· աթոռը սոյն առաջարկը կը կրկնէ ժողովին և կ'աւելցնէ թէ զայն անկարևոր նկատելով ուշադրութեան առնել կամ նկատել չ'ուզեր։ Ասոր վրայ անդամ մը ոտքի կանգ-նելով աթոռին կ'ուղղէ· «Տէր Նախագահ, կ'առաջար-կեմ որ սոյն առաջարկը նկատուի»։ Այս վերջին ա-ռաջարկը առանց վիճաբանութեան քուէի կը դրուի և կ'որոշուի «այո՛» կամ «ո՛չ» (տես Թ· **203**, **257**)։

**124**· Նկատման այս առաջարկը կրնայ գործածուիլ միայն մայր հարցի կամ գլխաւոր առաջարկի համար։

# ՄԱՍՆ Բ

## ԿԱՐԳ

**125**· Երբեմն ալ առաջարկ մը չի նկատուիր անոր փար-լամէնթական կանոնի մը հակառակ եղած ըլլալուն պատճառով, որ ատեն կարգի խնդիր կը յարուցուի, որուն վրայ պիտի խօսինք իր կարգին (տես Թ· **229**)։

**126**· Առաջարկի մը նկատառումը արգիլող ուրիշ կեր-պեր ալ կան, որոնք են· — սեղանի վրայ մնալ, ո-րոշ յետաձգում, անորոշ յետաձգում, յանձնում, և վիճադադարի առաջարկները։

# ՄԱՍՆ Գ

## ՍԵՂԱՆԻ ՎՐԱՅ ՄՆԱԼ

**127**· Այս առաջարկով խնդիր մը կախկախուի մինչև որ ժողովը հաճի կրկին խնդրին դառնալու։

**128**· Այս առաջարկը մէջտեղէն կը վերցնէ մայր հարցը իր բոլոր յարակից հարցերով։ Բնականաբար այս

հարցը իր վիճակովը դարձեալ սեղանէն եա կ՚առնուի երբ մասնաւոր առաջարկով մը ժողովին հաւանութիւնն ստացուի։ Այս վերջին առաջարկը առանձնաշնորհեալ չըլլալով՝ անոր շնորհուիլը բացարձակապէս ժողովի կամքէն կախեալ է։

129. Երբ այս առաջարկը անգամ մը մերժուի, ուրիշ ատեն կարելի է կրկին յարուցուիլ։

130. Այս առաջարկը անվիճաբանելի է։ Երբ ընդունուի, նկատառման առաջարկէն զատ, միւս բոլոր առաջարկներէն առաջնութիւն ստանալով՝ նախ աս կը գործադրուի (տես թիւ 204)։

# ՄԱՍՆ Դ

## ՑԵՏԱՁԳՈՒՄ ԱՊԱԳԱՑ ՈՐՈՇ ՕՐԻ ՄԸ

130. Երբ ժողովը ուզէ առաջարկ մը նկատել, բայց ոչ անմիջապէս, կը յետաձգէ զայն ապագայ օրուայ մը։ Ասոր գլխաւոր պատճառներն են, կամ ժողովին չափազանց զբաղուած ըլլալը և կամ անդամներուն փափաքը այդ խնդրին վրայ աւելի ծանօթութիւն հաւաքելու համար։

131. Այս առաջարկը վիճաբանելի է, բայց այս վիճաբանութիւնը մայր հարցումին դպչելու չէ։ Բարեփոխելի և վերնկատելի է։ Ցետադաս է «սեղանի վրայ մնալ» առաջարկէն, նախադաս «բարեփոխում» առաջարկէն, և նոյնադաս «յանձնում», «անորոշ յետաձգում» և «նախորդ հարց» առաջարկներուն (տես թիւ 257)։

# ՄԱՍՆ Ժ

## ԿՕՄԻՏԷԻ ՅԱՆՁՆՈՒՄ

**132**· *Երբ կարեւոր առաջարկ մը խեղճուկ ձեւի մը մէջ ներկայացուած է, եւ որը լուրջ նկատողութիւն եւ խորհրդածութիւն կը պահանջէ, ժողովին առնելիք խոհեմ քայլը ըլլալու է խնդիրը կոմիտէի մը յանձնել։*

**133**· *Եթէ այս պաշտօնով կոմիտէ մը արդէն գոյութիւն ունի, խնդիրը կը յանձնուի անոր։ Եթէ կոմիտէն կասկածելի է՝ վստահութեան քուէ կը պահանջուի։ Իսկ եթէ կոմիտէ չկայ, նախ առաջարկելու է որ կոմիտէ մը ընտրուի եւ ապա խնդիրը անոր յանձնուի։*

**134**· *Եթէ խնդիրը առանց հրահանգի յանձնուի, կոմիտէն լի իշխանութիւն կ'ունենայ խնդիրը իր ուզած կերպովը քննելու. իսկ եթէ հրահանգ տրուած է, սերտօրէն հետեւելու է հրահանգներուն (տես Թ. **69**)։*

**135**· *Քննութեան աւարտումէն ետք՝ կոմիտէն արդիւնքը տեղեկագրելու է ժողովին։*

**136**· *Այս առաջարկը կրնայ յարուցուիլ մայր հարցին իսկական՝ ինչպէս նաեւ անոր բարեփոխեալ վիճակին մէջ։*

**137**· *Եթէ կոմիտէին քննութիւնը անգոհացուցիչ գըտնուի, կրկին կը յանձնուի նոյն կամ ուրիշ կոմիտէի մը, հրահանգներով կամ առանց հրահանգի։*

**138**· *Այս առաջարկը վիճաբանելի է առանց մայր հարցին դպչելու, բայց երբ խնդիրը կոմիտէի պիտի յանձնուի մասնաւոր հրահանգներով, այն ատեն մայր հարցին վրայ ես կրնայ վիճաբանուիլ (տ* **257**)։

**139**· *Այս առաջարկը բարեփոխելի է հետեւեալ կերպերով.— կոմիտէն փոխելով, աւելցնելով կամ պակսեցնելով եւ կոմիտէին հրահանգ տալով։ Նոյնադաս է «որոշ» եւ «անորոշ յետաձգումներու» եւ «նախորդ հարցի»։*

# ՄԱՍՆ Թ.

## ԱՆՈՐՈՇ ՑԵՏԱՁԳՈՒՄ

**140**· *Այս առաջարկին նպատակն է խնդիրը յետաձգել անորոշ ատենի մը համար, այնպէս որ ապագային այլեւս ոչ կրնայ վերնկատուիլ ոչ ալ քուէի դրուիլ։ Այս առաջարկը ուրիշ խօսքով խնդիրը կը մեռցնէ։*

**141**· *Վիճաբանելի է մայր հարցին հետ միասին և վերնկատելի, բայց ոչ բարեփոխելի։ Նոյնադաս է «որոշ յետաձգում», «յանձնում» և «Նախորդ հարց» առաջարկներուն (տես Թիւ* **257***)։*

# ՄԱՍՆ Ժ

## ՆԱԽՈՐԴ ՀԱՐՑ

**142**· *Առաջարկներ սովորաբար ծագում կուտան երկրորդական առաջարկներու, որոնք մայր առաջարկէն առաջ որոշուելու են։ Բայց այս հարցին մէջ գործածուած «Նախորդ» բառը կը գործածուի ոչ թէ առաջնութիւն կամ գերադասութիւն ցուցնելու, այլ խնդիրին վրայ անդրադառնալով ապդել կամ ճնշել բուն առաջարկը։*

**143**· *Այս օժանդակ առաջարկը գրեթէ երկու դար առաջ ծագում առած է Անգլիական փարլամէնթին մէջ՝ բարձր անձնաւորութիւններու շուրջ դարձող առաջարկներ քօղարկելու դիտումով, և կամ անհետացնելու այն առաջարկները որոնց վրայ վիճաբանիլը աղէտալի հետևանքներու պիտի հանգէր։*

**144**· *Այս առաջարկին սկզբնական բանաձեւն էր. «Հարցումը պիտի նկատո՞ւի։ Ժխտիչ պատասխան մը զայն կը թաղէր շրջանի մը համար։ Այս բանաձեւը յետոյ փոխուեցաւ հետեւեալ ձեւին. «Հարցումը պիտի*

դրուի՞ հիմա», որուն բացասական պատասխանը հարցը կը յետաձգէր յաջորդ նիստին։

145. Միացեալ Նահանգներու մէջ երբ այս հարցին դրական պատասխանուէր՝ մայր հարցը մէջ բերուելով իր յարակից հարցերուն հետ միասին անմիջապէս և առանց վիճաբանութեան կ'որոշուէր։ Այս ընթացքը շատ մը տեղեր գործածական է թէև, սակայն արդի շատ մը ժողովներու մէջ աւելի հետևեալ կերպը որդեգրուած կը թուի։ Երբ հարցումի մը վիճաբանութիւնը կ'երկարի առանց կարևոր արդիւնքի մը, այն ատեն անդամ մը աթոռին ուղղելով «Նախորդ հարցը» կ'առաջարկէ. աթոռը այս առաջարկը հարցման դնելով կ'ըսէ. «Պարոնը նախորդ հարցը կը պահանջէ»։ Այս հարցը քուէի կը դրուի և սովորաբար կը վաւերացուի երկուերորդ քուէով։ Հարցումը վաւերացնելէն յետոյ վիճաբանութիւնը կը դադրի, մայր հարցը մէջ կը բերուի իր յարակից հարցերով, և նախ յարակից և երկրորդական և ապա մայր հարց յաջորդաբար քուէի դրուելով խնդիրը կ'որոշուի։

146. Միացեալ Նահանգաց ներկայացուցչաց ժողովին մէջ այս հարցը կը գործածուի մայր, ինչպէս նաև կարգ մը օժանդակ առաջարկներու համար անջատօրէն։

147. Այս հարցը իր ներկայ իմաստով խիստ օգտակարապէս կը գործածուի և կը նկատուի ամենակարևոր առաջարկներէն մին, որովհետև շատ անգամ վիճաբանութիւնը կերկարի անպայմանօրէն առանց վերջաւորութեան, այն ատեն այս հարցը վէճը կը դադրեցնէ և կը վճռէ խնդիրը առանց զայն երկարաձգելու։

148. Այս առաջարկը ոչ բարեփոխելի է և ոչ ալ վիճաբանելի, և երբ այս առաջարկէն յետոյ ժողովադադար առաջարկուի և ժողովը ելնէ, յաջորդ նիստին մէջ ատենագրութեան ընթերցումէն ետք և թերամնաց բոլոր գործերէն առաջ այս առաջարկը կը վեր-

նկատուի։ Աս նոյնադաս է որոշ և անորոշ յետաձգումներու և յանձնումի, եթէ ասոնցմէ մին առաջարկուած է «Նախորդ հարց» չառաջարկուիր (տես թիւեր 101, 257)։

# ՄԱՍՆ Ը

## ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐ

149· Բացատրուած ըլլալով թէ առաջարկներ ինչպէս կը գործածուին, կը մնայ գիտնալ ասոնց քննութեան և եղանակաւորման կերպերը։

150· Առաջին անգամ նախագահը կը կարդայ ընդունուած առաջարկ մը· ժողովը կը վիճաբանի այս հարցին վրայ։ Յետոյ գրագիրը կը կարդայ զայն կամաց կամաց, կանգ առնելով ամէն պարբերութենէ վերջ, որպէսզի ժողովը ժամանակ ունենայ այդ պարբերութեան վրայ պէտք եղած բարեփոխումներն ընելու։

151· Հարցումներու յառաջաբանը ամենէն ետք նկատի կ՚առնուի, որովհետև յառաջաբանը հարցին վերջին վիճակին վրայ կը ձևուի։

152· Բարեփոխութեան նպատակն է յարուցուած առաջարկ մը մասնակի թերութիւններու համար չի մերժելով՝ բարեձևել և ընդունիլ կամ շնորհել։ Եթէ օրէնք ըլլար որ հարցումներ կա՛մ շնորհուէին կամ մերժուէին, այն ատեն անտարակոյս շատ մը հարցեր պիտի մերժուէին, և ընդունուած առաջարկներուն մէջն ալ անիմաստ, երկդիմի և նախապէս ընդունուած օրէնքներու անհամաձայն կէտեր պիտի գտնուէին։ Հետևաբար ժողովներ ժառանգական իշխանութիւն ունին տրուած առաջարկ մը ձևափոխել և բարեձևել իրենց պատշաճ դատած եղանակով։

## Ա. ԲԱՐԵՓՈԽՈՒՄԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՆՈՆՆԵՐ

**153.** Բարեփոխում երեք կերպով կը կատարուի.

ա) Ջնջումով,

բ) Ներմուծումով,

գ) Ջնջումով և ներմուծումով։

Այս բարեփոխումներ հաւասարապէս ենթակայ են հետեւեալ կանոններուն.

Ա. Կանոն.— Երբ առաջարկ մը բաղկանայ քանի մը մասերէ, բարեփոխելու կերպն է սկսիլ սկիզբէն և բարեփոխել մաս առ մաս։ Բարեփոխումը լմննալէն վերջ կարելի չէ վերադառնալ և բարեփոխել։

Բ. Կանոն.— Բոլոր բարեփոխումի առաջարկներ բարեփոխման ենթակայ են, բայց կարելի չէ բարեփոխել բարեփոխուածի մը բարեփոխման առաջարկը։

Օրինակ.— Տրուած առաջարկն է ԱԲ. կառաջարկուի բարեփոխել ներմուծելով ԳԴ. դարձեալ կ'առաջարկուի բարեփոխել այս բարեփոխումը ԳԴի տեղ ԵԶ. ներմուծելով։ Այս վերջինը կարելի չէ այլեւս բարեփոխել։ Միակ կերպը որով կարելի է յաջողիլ, է՝ ջնջել ԵԶ և անոր տեղ ներմուծել ԵԶէ։

Գ. Կանոն.— Ժողովին կողմէն ընդունուած կամ մերժուած բարեփոխում մը կարելի չէ բարեփոխել։

Դ. Կանոն.— Ուէ առաջարկ մը որ ժողովէն մերժուած է կարելի չէ կրկին առաջարկել։

Ե. Կանոն.— Երբ առաջարկուած բարեփոխում մը նախապէս ընդունուած բարեփոխումի մը հակառակ կամ անհամապատասխան է, կը մերժուի ժողովէն։

Զ. Կանոն.— Բարեփոխումներ ըլլալու են մայր հարցին բուն իմաստին շուրջ և կարելի եղածին չափ համիմաստ, և ոչ թէ այլիմաստ կամ հակիմաստ։

*Է· կանոն·* — *Երբ ժողովը իր առջև ունի բարեփոխումի առաջարկ մը, ուրիշ առաջարկ կարելի չէ մատուցանել, բացի եթէ ան ըլլայ բարեփոխումի մը բարեփոխման առաջարկը։*

**154**· *Ասոնք «կարգի խնդիր» ըլլալով թէև որոշուելու են աթոռին կողմէն, սակայն աթոռին որոշումն ևս ենթակայ ըլլալով վերադիմումի* (appeal), *յանձնարարելի է որ անոնք ուղղակի ժողովին տրուին։*

## Ա· — ԲԱՐԵՓՈԽՈՒՄ ՋՆՋՈՒՄՈՎ

**155**· *Աս ամենապարզ բարեփոխում մըն է, և շատ դիւրին է կատարել։ Առաջարկը պէտք է յստակօրէն ցուցնէ ջնջուելիք բառերը կամ նախադասութիւնը, և անոնց դիրքը գլխաւոր հարցին մէջ։ Աթոռը այս առաջարկը ժողովին կը յանձնէ ըսելով· «Առաջարկուած է որ հետևեալ բառերը (կը կարդայ) ջնջուին, ժողովը կը հաւանի՞ այս առաջարկին»։*

**156**· *Եթէ առաջարկը մերժուի, վերստին կարելի չէ յարուցանել, բայց կարելի է առաջարկել որ ջնջուին նոյն բառերը կամ անոնց մէկ մասը ուրիշներու հետ միասին, պայմանով որ ասոնք իմաստի յարակցութիւն ունենան։*

**157**· *Եթէ բարեփոխումի առաջարկը ընդունուի, կարելի չէ առաջարկել որ ջնջուածը ներմուծուի, բայց կարելի է այդ ջնջուածը կամ անոր մէկ մասը վերմուծուիլ ուրիշ բառերու հետ։*

**158**· *Ջնջումով բարեփոխումի առաջարկի ատեն նկատի ունենալու է Ա ենթամասի Գ և Դ կանոնները։*

**159**· *Բարեփոխումի առաջարկը մայր հարցէն առաջ նըկատուելու և որոշուելու է։*

**160**· *Այս առաջարկին հարցադրումի բանաձևն է· «Բառերը մնա՞ն իբր մաս ամբողջին թէ ջնջուին»։*

**161**· *Այս առաջարկը մատուցանելու կերպն է նախ կարդալ բարեփոխուելիք պարբերութիւնը, յետոյ անկէ*

ջնջուելիք մասը, և ապա պարբերութիւնը իբր բարեփոխուած։

### Բ. — ԲԱՐԵՓՈԽՈՒՄ ՆԵՐՄՈՒԾՈՒՄՈՎ

162. Այս առաջարկն ևս նախորդին չափ պարզ և դիւրին է։ Եթէ այս առաջարկը մերժուի կրկին կարելի չէ յարուցանել։ Սակայն կարելի է առաջարկել նոյնը ամբողջովին կամ մասամբ ուրիշ բառերու ընկերակցութեամբ, պայմանաւ որ նոր առաջարկը տարբեր իմաստ ունենայ նախորդէն։

163. Եթէ այս առաջարկը ընդունուի, կարելի չէ առաջարկել որ ներմուծուածը վերցուի, եթէ ոչ առաջարկուի ջնջնել նոյնը կամ անոր մէկ մասը ուրիշ բառերու հետ միասին, պայմանաւ որ վերջինը նախորդէն տարբեր իմաստ ունենայ։

164. Առաջարկելու կերպն է. նախ կարդալ բարեփոխուելիք պարբերութիւնը, յետոյ ներմուծուելիք մասը և ապա պարբերութիւնը իբր բարեփոխուած։

### Գ. — ԲԱՐԵՓՈԽՈՒՄ ՋՆՋՈՒՄՈՎ ԵՒ ՆԵՐՄՈՒԾՈՒՄՈՎ

165. Բարեփոխումի երրորդ ձևն է մասնաւոր բառեր վերցնել և անոնց տեղ ուրիշներ ներմուծել, որն իսկապէս նախորդ երկու առաջարկներուն միացումն է, հետևաբար, ժողովի մը քուէովը կամ կանոնի մը տրամադրութեան համաձայն այս հարցը կարելի է պարձեալ երկուքի բաժնել։

166. Բաժանումէն յետոյ նախ ջնջումը որոշուելու է և և ապա ներմուծումը։ Եթէ առաջինը բացասական որոշուի երկրորդն ալ անոր կ'ընկերանայ։

167. Այս անբաժան առաջարկը մերժուելէ յետոյ կրկին կարելի է առաջարկել հետևեալ պարագաներու տակ.

ա) Ջնջել նոյն խօսքը, աւելցնել ոչինչ,

բ) Ջնջել նոյն խօսքը, ներմուծել ուրիշ բառ կամ խօսք։

գ) Ջնջել նոյն խօսքը, ներմուծել նոյնը ուրիշ բառերու հետ։

դ) Ջնջել նոյն խօսքը, ներմուծել նոյնէն մաս մը ուրիշ բառերու հետ,

ե) Ջնջել նոյն խօսքը ուրիշի մը հետ, ներմուծել նոյնը։

զ) Ջնջել նոյն խօսքին մէկ մասը ներմուծել նոյնը,

է) Ջնջել ուրիշ բառեր, ներմուծել նոյնը։

ը) Ջնջել ոչինչ, ներմուծել նոյնը։

168. Ջնջումի և ներմուծումի առաջարկին ընդունուելէն յետոյ կարելի չէ առաջարկել կրկին որ ջնջուածը կամ անոր մէկ մասը ներմուծուի և ներմուծուածը կամ անոր մէկ մասը ջնջուի։ Կարելի է, սակայն, առաջարկել հետևեալ պարագաներու տակ.

ա) Ներմուծել նոյն բառեր ուրիշներու հետ,

բ) Ներմուծել նոյնէն մաս մը ուրիշներու հետ,

գ) Ջնջել նոյնէն մաս մը ուրիշներու հետ։

169. Առաջարկելու կերպն է. կարդալ նախ բարեփոխուելիք պարբերութիւնը, յետոյ ջնջուելիք և ներմուծուելիք կտորները, և ապա պարբերութիւնը իբր բարեփոխուած։

170. Բարեփոխումի բոլոր առաջարկներ, բարեփոխելի, վիճաբանելի և վերընկատելի են։ Կը բաժնուին հարցման ենթակայ՝ նկատման եղանակ առաջարկէն և կ'ընթերցուին անդամոց պահանջին համաձայն։

## Դ. — ԱՌԱՋԱՐԿՈՂԻՆ ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐԸ

171. Առաջարկ մը երկրորդուելէ և աթոռին կողմէն հարցման դրուելէ յետոյ կարելի չէ ետ առնել, բայց եթէ միայն ընդհանուր հաւանութեամբ։

172. Երբ առաջարկ մը դեռ հարցման դրուած չէ, և անդամներէն մին բարեփոխում մը ընել կը փափաքի, սովորաբար այս բարեփոխումը կ'ընդունուի մայր խնդիրը առաջարկողին հաւանութեամբ, որովհետև առաջարկը դեռ իր քոնթրոլին տակ կը գտնուի։

## Ե. — ԻՄԱՍՏԱՓՈԽ ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐ

**173.** Բարեփոխման նպատակն է բարելաւել առաջարկ մը, եւ զայն դնել դիւրըմբռնելի եւ նպատակայարմար վիճակի մը մէջ։

**174.** Առաջարկի մը համախոհներ կրնան փոփոխել զայն քանի խնդիրը աթոռին կողմէն հարցի դրուած կամ ժողովին յանձնուած չէ։

**175.** Երբ առաջարկ մը ժողովին տրամադրութեան տակ է, այլեւս ոեւէ անդամ անհատապէս անոր չի կրնար հասնիլ, բայց եթէ միայն ժողովին թոյլտուութեամբ։

**176.** Ժողովը կարող է իր ձեռքն ունեցած խնդիրը իր յարմար սեպած կերպով բարեփոխել։ Այս ընթացքին մէջ երբեմն առաջարկներ այն աստիճան կ'այլակերպին որ անոր համակիրներն իսկ անոր հակառակ կը քուէարկեն, ինչ որ պիտի չընէին անոր նախնական վիճակին մէջ։ Այս ընթացքը կը բռնուի այն ատեն երբ առաջարկը ժողովին կամ համայնքին շահերուն աննպաստ կը նկատուի։

**177.** Դարձեալ, այս միջոցով երբեմն բառեր կը ներմուծուին որ առաջարկին իմաստը կը յեղաշրջեն։ Երբեմն ալ լման պարբերութեան մը տեղ ուրիշ մը կը զետեղուի, որը թէեւ նախորդին համեմատ կը թուի, սակայն երբ ամբողջ առաջարկը նկատի առնուի, հոն նոր բառերու ձգած ճակատագրային ազդեցութիւնը յայտնի կը տեսնուի։

**178.** Ճարպիկ առաջարկողներ երբեմն այնքան կը յառաջանան որ մայր հարցը վերցնելով անոր տեղ ուրիշ մը կը դնեն։ Այս պարագան պարզապէս հարցմանց փոխանակում կը նշանակէ, որով նախորդ առաջարկը կ'անհետի իր յարակից բոլոր առաջարկներով։

**179.** Առաջարկի մը հակակիրներ, ուրեմն, կը ջանան զայն այլափոխել այն աստիճան որ անոր համակիրներ ստիպուած կը լքեն զայն եւ հակառակ կը քուէարկեն։

**180.** Ուրեմն, առաջարկողն ու անոր համախոհները

փարլամէնթական յառաջխաղացը խիստ աչալրջու-թեամբ հսկելու են, որպէսզի մի գուցէ իրենց իրաւունքը անգիտակցաբար վտանգուի կամ չէզոքանայ կուսակցական պայքարներու միջոցին ։

## Զ. — ՀԱՐՑԻ ԲԱԺԱՆՈՒՄ

181. Երբ առաջարկ մը խառն կը թուի և քանի մը անկախ մասերէ կը բաղկանայ այն ատեն առաջարկելու է որ սոյն առաջարկը տարբեր հարցերու բաժնուի ։

182. Այս բաժնուած մասերը առանձինն կը նկատուին և կը քուէարկուին իրենց բաժանումի կարգով ։

183. Առաջարկողը պարզօրէն ցուցնելու է բաժնուելիք մասերը ։

184. Այս առաջարկը բարեփոխելի է և կարելի վերընկատուիլ ։

185. Առաջարկներ այնպէս բաժնուելու են որ եթէ բաժնուած մասերէն մին կամ մի քանին վերցուին միւսներուն իմաստը չազդուի կամ չայլայլի ։ Բայց երբ անոնցմէ մին վերցնելով միւսներն անիմաստ կը մնան այդ պարագային բաժանում թոյլատրելի չէ ։

186. Նախագահին պարտականութիւնն է քննել այն կարգի առաջարկներ և ստուգել բաժանումի հետեւանքը ։

## Է. — ԲԱՑ ԼԵՑՆԵԼ

187. Յաճախ կը պատահի որ առաջարկող մը գրութեան մը մէջ պայմանի, թիւի և ժամանակի տեղերը բաց կը թողու որպէսզի ժողովին կողմէն լեցուին ։

188. Պայման լեցնելու կերպը բառեր ներմուծելու կերպին նման է, իսկ թիւի և ժամանակի հարցը սկզբնական. ըլլալով որոշելու է անջատօրէն՝ գլխաւոր հարցին երթալէն առաջ ։

189. Թիւ և ժամանակ լեցնելու համար մատուցուած տարակարծիք առաջարկներ աթոռին կողմէն դասաւորուելով ժողովին կը յանձնուին ։

**190**. *Այս հարցերն որոշելու երկու կերպ կայ, որոնք կը կոչուին ծայրագոյն մէթոտ և մերձաւորագոյն մէթոտ.*

*ա) Ծայրագոյն Մէթոտ. — Երբ մեծագոյնը կը պարունակէ փոքրագոյնը, ինչպէս յետաձգումի օրը, կոմիտէի մը անդամոց թիւը, տուգանքի մը գումարը, բանտարկութեան մը տևողութիւնը և այսօրինակ մեղմանալի և նուազելի* (terminus a quem) *հարցումներու մէջ, այն ատեն ծայրագոյն թիւէ մը սկսելով նուազագոյնին իջնելու է մինչև որ ժողովը նուազագոյն թիւի մը վրայ հաւանութիւն տայ։*

*բ) Մերձաւորագոյն Մէթոտ. — Երբ փոքրագոյնը կը պարունակէ մեծագոյնը, ինչպէս սակի սահմանում, տուրքի որոշում, այս կարգի աճելի և ընդարձակելի* (terminus a quo) *հարցերու մէջ, փոքրագոյնէն սկսելով առաւելագոյնին ընթանալու է մինչև որ ժողովը հաւանութեան մը յանգի։*

## Ը. — ՅԱՒԵԼՈՒՄ, ԱՆՋԱՏՈՒՄ ԵՒ ՏԵՂԱՓՈԽՈՒՄ

**191**. *Ուր երկու հարցեր կարելի է միացնել, անոնցմէ մին մերժելով՝ բարեփոխման ձևին տակ անոր նիւթը աւելցնելու է միւսին վրայ։*

**192**. *Յանձնարարելի է որ միաձուլումի խնդիրներ կոմիտէի յանձնուին։*

**193**. *Ուր նոր հարց մը կարելի է անջատել կամ բաժնել, սովորական կերպն է, բարեփոխումի ձևին տակ հարցման մէկ մասը ջնջելով անջատ հարց մը յօրինել (տես թիւ* **165**)։

**194**. *Նախորդին պէս այս ալ կոմիտէի յանձնելու է։*

**195**. *Ուր տեղափոխում հարկ է, առաջարկելու է որ որոշ տեղի մը պարբերութիւնը վերցնելով այս ինչ տեղը դրուի։*

**196**. *Առաջարկի մը մասերուն կամ պարբերութեանց թիւերը եզերային* (marginal) *ըլլալով, առանց ժողովին հաւանութեան աթոռին կողմէն կրնան փոխուիլ։*

# Գլուխ Է

## ԱՌԱՋԱՐԿՆԵՐՈՒ ԿԱՐԳԸ

**197**. *Ցարդ բացատրուած երկրորդական առաջարկները կը կոչուին օժանդակ առաջարկներ, որովհետև անոնք ուղղակի կ'ազդեն մայր հարցի ձևին և էութեանը վրայ։*

**198**. *Ասոնցմէ զատ կան ուրիշ երկրորդական առաջարկներ որոնց վրայ խօսելէ առաջ կ'արժէ որ օժանդակ հարցերու վրայ հարևանցի քաղուած մը ընենք.*

**199**. *Երկրորդական հարցեր երեք գլխաւոր մասերու կը բաժնուին, որոնք են.*

*Օժանդակ առաջարկներ,*
*Առանձնաշնորհեալ առաջարկներ,*
*Պատահական Առաջարկներ։*

## ՄԱՍՆ Ա

### ՕԺԱՆԴԱԿ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

**200**. *Օժանդակ առաջարկներ երկրորդական առաջարկներ են որ կը վերաբերին գլխաւոր առաջարկի մը։ Անոնց նպատակն է պարզել առաջարկ մը, որպէսզի ժողովը կարենայ դիւրութեամբ և յարմարագոյն կերպով ընձեռել զայն։*

**201**. *Այս առաջարկներ յաճախ կը բարեփոխեն, երբեմն կ'այլափոխեն և հազուադէպ պարագաներու տակ ալ կը չեզոքացնեն մայր հարցը։*

**202**. *Օժանդակներ կը բաժնուին չորս դասակարգի.*

*Ա դաս. Նկատում,*
*Բ դաս. Սեղանի վրայ մնալ,*

Գ դաս. Յանձնում,
Որոշ յետաձգում,
Անորոշ յետաձգում,
Նախորդ հարց,
Դ դաս. Բարեփոխում։

203. Ա Դաս. «Նկատումի հարց»ը կը յարուցուի գլխաւոր առաջարկին մերժումէն անմիջապէս յետոյ, և ոչ ուրիշ ատեն (տես թիւեր 123, 267)։

204. Բ Դաս. «Սեղանի վրայ մնալ» հարցը կը յարուցուի ժողովին առաջարկ մը նկատելու որոշումէն յետոյ, ոեւէ ատեն, որը միւսներէն առաջնութիւն ունենալով կանուխ կը նկատուի և կ'որոշուի (127, 257)։

205. Գ Դաս. Այս դասին մէջ կան չորս առաջարկներ, որոնք հաւասար արժէք ունին և մին միւսին տեղը չի կրնար բռնել։ Ասոնցմէ առաջին առաջարկուողը պէտք է նախ որոշուի։ Երբ ժողովը նկատի ունի ասոնցմէ մին, ուրիշ մը կարելի չէ առաջարկել մինչև որ սոյն առաջարկը որոշուի։

206. Դ Դաս. «Բարեփոխում»ի առաջարկը վերջին տեղը կը գրաւէ, և միւսներէն առաջնութիւն չունի։

207. Սովորաբար այս առաջարկներ ոչ թէ իրարու, այլ մայր հարցին համար կը գործածուին, բացի բարեփոխում առաջարկէն, որ կը գործածուի բարեփոխում, որոշ յետաձգում և յանձնում առաջարկներուն համար, հետևեալ պատճառներով.

ա) Անտեղի է երկրորդական հարց մը գլխաւորէն բաժնել,

բ) Յարմարագոյն կերպն է օժանդակ հարցի մը հակառակ քուէարկել քան թէ անոր վրայ ուրիշ մը աւելցնել։

գ) Շատ մը հարցեր իրարու վրայ դիզուելով ժողովը անել կացութեան մը կը մատնեն։

208. Երբ նախադաս առաջարկ մը յարուցուի, կանխաւ յարուցուած բոլոր յետադաս առաջարկներ առկախ կը մնան մինչև որ նախադասը որոշուի։

# ՄԱՍՆ Բ

## Ա. — ԱՌԱՆՁՆԱՇՆՈՐՀԵԱԼ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

**209**. Այս առաջարկներ մայր հարցին հետ շատ քիչ գործ ունին։ Ասոնք ուղղակի կապուած են ժողովին էութեան հետ։ Այս պատճառով այս առաջարկները առաջնութիւն ունին ուրիշ ոեւէ հարցէ և անմիջապէս նկատի կ'առնուին (տես թիւ 258)։

**210**. Առանձնաշնորհեալ առաջարկներն են.

ա) Ժողովադադար,

բ) Ժողովադադարի ստուգում,

գ) Միջոց,

դ) Ժողովական առանձնաշնորհ կամ իրաւունք,

ե) Անհատական, ընկերային առանձնաշնորհ կամ իրաւունք, ինչպէս նաև բոլոր անակնկալ պատահարներու կարգադրութեանց առաջարկներ։

**211**. Ա Ժողովադադար. Այս առաջարկը ամենէն առանձնաշնորհեալն է, և միակ միջոցը որով ժողով մը կը փակուի կամ կ'ելնէ։

**212**. Ան ոեւէ ատեն ի կարգի կը նկատուի, սակայն զայն յարուցանելէ զգուշանալու է, անդամի մը վիճաբանած կամ քուէ առնուած պահերուն։ Սպասելու է որ վիճողը իր խօսքը լմնցնէ և քուէն ալ լման հաւաքուի։

**213**. Աս ոչ վիճաբանելի է, ոչ ալ բարեփոխելի, և խակապէս ենթակայ չէ ոեւէ առաջարկի։

**214**. Երբ ժողովի մը յաջորդ նստաժամը անորոշ է, ժողովադադար առաջարկը այդ պարագային ժողովին լուծումը կը նշանակէ։

**215**. Հետևաբար ժողովադադարը իր այս վերջին իմաստով թէև առանձնաշնորհեալ, սակայն ենթակայ է վիճաբանութեան, բարեփոխումի և վերնկատումի։

## Բ. — ԺՈՂՈՎԱԴԱԴԱՐԻ ՍՏՈՒԳՈՒՄ

**216**. *Յաջորդ նիստին օրը յայտնի չըլլալով, երբ ժողովադադար առաջարկուի, հոս կրնայ ստուգուիլ թէ ժողովը մինչև երբ պիտի յետաձգուի, կամ ե՞րբ պիտի գումարուի յաջորդ նիստը։*

**217**. *Այս առաջարկը երկրորդ անգամ յարուցանելու համար պէտք է որ առաջին և երկրորդ առաջարկներուն մէջ տեղ ուրիշ գործ մը տեսնուած ըլլայ։*

**218**. *Այս առաջարկը բարեփոխելի, վիճաբանելի և վերնկատելի է։*

## Գ. — ՄԻՋՈՑ ԱՌՆԵԼ

**219**. *Երբ մասնաւոր կանոնով մը ժողովի հանգստամիջոց տրամադրուած է, որոշուած ատենին, այս առաջարկը առանձնաշնորհեալ ըլլալով, անմիջապէս կը նկատուի, առանց վիճաբանութեան և բարեփոխման։ Եթէ միջոցատուութեան կանոն մը չկայ, ան ոչ-առանձնաշնորհեալ նկատուելով, կրնայ յարուցուիլ միայն այն ատեն երբ արդէն վիճաբանութեան դըրուած հարց մը լուծուած է։*

**220**. *Այս առաջարկը իր ոչ-առանձնաշնորհեալ վիճակին մէջ վիճաբանելի և բարեփոխելի է։*

## Դ. — ՔՕՐԸՄԻ ՆԵՐԿԱՅՈՒԹԻՒՆԸ

**221**. *Քօրըմի ներկայութիւնը, ուէ խնդիր որոշուած ատեն թէև անհրաժեշտ է, սակայն ժողովի յետաձըգման առաջարկին շնորհուած ատեն քօրըմի պէտք չկայ* (*տես թիւ* **31**)։

*ԾԱՆՕԹ. Ա. — Ֆրանսական ժողովը ելնելէն առաջ կ'որոշէ յաջորդ նիստի ժամը և օրակարգը։*

*ԾԱՆՕԹ. Բ. — «Յետաձգում» և «Ժողովադադար»ի տարբերութիւնը. — Առաջինը* (postpone) *սոսկ կը նըշանակէ ժողովին նկատողութեան յանձնուած կամ վիճաբանութեան տակ եղող խնդիր մը յետաձգել, իսկ երկրորդը* (adjourn) *կը նշանակէ փակել ժողովը այդ օրը և վերսկսիլ նոյն տեղէն՝ յաջորդ նիստին։*

## Ե. — ԱՌԱՆՁՆԱՇՆՈՐՀՆԵՐ

**222**. Առանձնաշնորհի հարցեր երկուքի կը բաժնուին. ժողովին առանձնաշնորհները, և անդամի մը առանձնաշնորհները։ Առաջինին վերաբերող պարագաներն են դիւանի իրաւունքներուն, ապահովութեանն ու արժանապատուութեանը վնասող արարքներ, իսկ երկրորդինը՝ արարքներ որք կը դպչին անհատի մը իրաւունքներուն և արժանապատուութեան՝ անոր պաշտօնական հանգամանքին մէջ (տես Թ. **59**, **283**, **297**)։

Օրինակ Ա. Սրահներուն մէջ անկարգութիւն ըլլալ, ժողովը խուժանով կամ զինուորով շրջապատել, ժողովին գաղտնիքները դուրս տալ, պաշտօնաթղթերու դպչիլ, ևայլն։

Օրինակ Բ. Կաշառակերութիւն, սպառնալիք, կռիւ, ևայլն։

**223**. Ժողովական առանձնաշնորհի առաջարկներ անդամական առանձնաշնորհի առաջարկներէն նախադաս են։

**224**. Ասոնք երկուքն ալ բարձր առանձնաշնորհում կը վայելեն, և կրնան յարուցուիլ ուէ ատեն, նոյն իսկ կրնան անդամի մը խօսքը ընդհատել, որու միջոցին ամէն գործ դադրելու է մինչև որ անոնք որոշուին, ի բաց առեալ ժողովադադար առաջարկը, որն եթէ յարուցուի ժողովը պէտք է որ ելնէ։

**225**. Վ ե ր ա դ ի մ ո ւ մ (appeal). — Այս Առանձնաշնորհի առաջարկը նախ աթոռին կողմէն կ'որոշուի. եթէ անոր որոշումը անգոհացուցիչ գտնուի, առաջարկուն կը վերադիմէ ժողովին, եթե վերադիմումը չնորհուի այն ատեն ժողովը խնդիրը կը քննէ և ըստ այնմ կ'որոշէ։

**226**. Վերադիմումը ենթակայ է «Նկատելու Ծղանակ» և «Վերնկատում» առաջարկներուն, և վիճաբանելի է (տես Թիւ **233**)։

**227**, Առանձնաշնորհի առաջարկներ ենթակայ են բոլոր օժանդակ հարցերուն։

# ՄԱՍՆ Գ

## ՊԱՏԱՀԱԿԱՆ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

**228**, *Առանձնաշնորհեալ առաջարկներէն զատ ուրիշ կարգ մը առաջարկներ ալ կան որոնք ժողովը ընդմիջելու առանձնաշնորհը կը վայելեն, և որոնք կը կոչուին պատահական առաջարկներ։ Այս առաջարկներն են. կարգ, ընթերցանութիւն, յետակոչում, կանոնի առկախում, հարցումի բաժանում, և նկատումի եղանակ։*

**229**. *Կ ա ր գ.— Ժողովավարութեան ընթացքին խիստ կանոնապահութիւն յարգելու է (տես թիւեր* **59-65**)։

**230**. *Ժողովը ընթանալու է այդ օրուան յատկացուած գործակարգին համաձայն առանց զարտուղումի կամ զանցառութեան։*

**231**. *Այս առաջարկը աթոռին կ'ուղղուի, որուն դատողութիւնը վերադիմումի ենթակայ է։*

**232**. *Աթոռը կամ ուէ անդամ եթէ կարգաբեկութեան պարագայ մը նշմարէ անմիջապէս ժողովին ուշադրութիւնը անոր հրաւիրելու է (տես թ* **125**, **262**)։

*Օ ր ի ն ա կ.— Անդամ մը կը դիտէ որ ժողովը կարգէ դուրս կ'ելլէ, ոտքի կանգնելով աթոռին կ'ուղղէ, «Տէր նախագահ, կը կանգնիմ կարգի խնդրի համար»։ Աթոռը կը խնդրէ որ կարգի խնդիրը մէջ բերուի։ Անդամը կը յայտնէ պարագան, և աթոռը խնդիրը կը վճռէ։ Եթէ այս վճիռը անգոհացուցիչ նկատուի ժողովին կը վերադիմուի, և այն ատեն սա հարցը կը դրուի. «Ժողովը կը հաւանի՞ աթոռի որոշումին»։ Եթէ «այո» պատասխանուի, ժողովը կը դառնայ իր գործին, իսկ եթէ ժողովը երկու հաւասար մասերու բաժնուի, նախագահին որոշումը հաստատ կը մնայ։*

**233**. *Վերադիմումը վիճաբանելի է, իսկ անոր նկատառման ժամանակը վերադիմում մը ևս ընել կարելի չէ (տես թիւ* **225**)։

**234**. Կարգ առաջարկուած ատեն, նախագահը անմիջապէս քննելու և ստուգելու է խնդիրը առանց երկար ձգձգելու։

**235**. Վերադիմումի ատեն նախագահը ժողովի վիճաբանութեան կրնայ մասնակցիլ։

**236**. Ընթերցանութիւն. — Ոևէ անդամ իրաւունք ունի պահանջելու որ վերջին քուէարկումէն առաջ խնդրի մը վերաբերող թղթեր կարդացուին, որպէս զի անոնց վրայ ամփոփ գաղափար մը կազմէ և գիտնայ թէ ինչ բանի կը քուէարկէ։ Այս կարգի պահանջի մը վրայ նախագահը կը հրահանգէ գրագիրն որ կարդայ պէտք եղած թղթերը (տես թիւ 6)։

**237**. Սակայն երբ խնդիրը վիճաբանութեան տակ է դեռ, անոր նկատմամբ սեղանին վրայ գտնուող թուղթեր ըստ կամս կարդալ թոյլատրելի չէ։ Այս բացառութեան պատճառը ժամանակի սղութիւնն է։

**238**. Ընդհանուր կանոնն է ուրեմն որ եթէ մէկը ուզէ որ որոշ թղթեր կարդացուին, և ատոր առարկուի, պարտի առաջարկով մը ժողովին թոյլտուութիւնը խնդրել։

**239**. Աթոռը սովորաբար չառարկեր անոնց որոնք անկեղծօրէն կը փափաքին ծանօթութիւն ստանալ։

**240**. Կոմիտէի մը յանձնուած թղթեր չեն կարդացուիր։

**241**. Այս առաջարկը կ՚եղանակաւորի բարեփոխմամբ և հարցի բաժանմամբ։ Կարելի է վերնկատուիլ, բայց վիճաբանելի չէ։

**242**. Յետակոչում. — Երբ առաջարկ մը ժողովին յանձնուած է կամ հարցման դրուած, կարելի չէ այլեւս զայն յետս կոչել, բայց եթէ առանձին առաջարկով մը։ Եթէ այս առաջարկը շնորհուի, խնդիրը մէջտեղէն կը վերցուի, իսկ եթէ մերժուի ժողովը կը շարունակէ քննել խնդիրը։

**243**. Այս առաջարկը վիճաբանելի չէ, բայց կարելի է վերնկատուիլ երբ յետակոչուած չէ դեռ։

244· *Կանոնի առկախում*· — Ուր երկու հակիմաստ կանոններ գտնուին, առաջարկելու է որ անգործածելի կամ աննպաստ և կամ հին կանոնը առկախուի կամ վերցուի։

245· Այս խնդիրը երբ կը յարուցուի իբր երկրորդական առաջարկ մը, այն ատեն մայր հարցէն առաջնութիւն ունենալով անկէ առաջ կ'որոշուի առանց ոևէ երկրորդական հարցի ենթարկուելու։

246· Կանոններ կ'առկախուին մասնաւոր կանոնի մը տրամադրութեան համաձայն, այդ կանոնի բացակայութեան կ'առկախուին ընդհանուր հաւանութեամբ։

247· *Հարցումի բաժանում*· — Այս առաջարկին վրայ կանխաւ խօսած ենք։ Ասով կ'առաջարկուի հարցում մը մասերու բաժնել և զանոնք անջատապէս քուէարկել։ Առաջարկողը պարտի ցուցնել թէ քանի՞ մասերու կրնայ բաժնուիլ (տես թիւ 182)։ Այս առաջարկը ի կարգի է բուն իսկ նախորդ հարց օժանդակին շնորհուելէն վերջ։ Բարեփոխելի է և կրնայ վերնկատուիլ։

248· *Նկատելի եղանակ*· — Առաջարկներու նկատումի եղանակին համար ժողովներ յատուկ կանոններ ունենալու են, որոնց բացակայութեան այս առաջարկը կարելի ըլլայ յարուցուիլ ոևէ ատեն։ *

249· Ասոր նպատակն է եղանակաւորել առաջարկի մը վրայ ըլլալիք վիճաբանութիւնն ու քննելակերպը։

250· Կանոնի մը չգոյութեան պարագային այս առաջարկը միաձայն քուէով միայն կարելի է շնորհուիլ։

251· Աս բարեփոխելի է և հարցմանց բաժանելի։ Կրնայ վերնկատուիլ, բայց ոչ այն ատեն երբ նկատումը սկսուած է։

---

* Այս կարգի ժողովավարական խնդիրներու նկատմամբ ոչ-պաշտօնապէս հասկացողութեան մը կարելի է գալ աթոռին հետ խորհրդակցութեամբ, հակառակ պարագային խնդիրը ձգելու է ժողովին, որը զայն որոշելու է առանց պաշտօնական վիճաբանութեան։

# Գլուխ Ը

## ՔԱՂՈՒԱԾ

552․ *Որպէսզի յստակ գաղափար մը ունենանք բոլոր առաջարկներու շարքին, գործածութեանց, յարաբերութեանց և արժէքին վրայ, կարևոր է որ հոս դասաւորենք զանոնք իրենց գլխաւոր յատկանիշներով։*
253․ *Պատկեր Ա ամփոփ գաղափար մը կ'ուտայ առաջարկներու յարաբերական դիրքին և արժէքին վրայ։*
254․ *Պատկեր Բ կը ցուցնէ անոնց գործածութիւնը։*

### ՊԱՏԿԵՐ Ա



## ՊԱՏԿԵՐ Բ

| Թիւ | Առաջարկներ | Բաժանելի՞ հարցմանց | Բարեփոխելի՞ | Ընթերցանելի՞ | Յանձնելի՞ | Յետաձգելի՞ որոշ | Յետաձգելի՞ անորոշ | Նախո՞րդ հարց | Նկատելի՞ | Նկատումի՞ եղանակ | Վերնկատելի՞ | Վիճաբանելի՞ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 227 | Առանձնաշնորհի խնդիր | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա |
| 245 | Առկախում, կանոնի | o | o | o | o | o | o | o | o | o | o | o |
| 247 | Բաժանում, հարցի | o | ա | o | o | o | o | o | o | o | ա | o |
| 170 | Բարեփոխում | ա | ա | ա | o | o | o | o | o | ա | ա | ա |
| 211 | Ընթերցանութիւն | ա | ա | o | o | o | o | o | o | o | ա | o |
| 243 | Ժողովադադար | o | [2]o | o | o | o | o | o | o | o | o | o |
| 218 | Ժողովադադարի ստուգում | o | ա | o | o | o | o | o | o | o | ա | ա |
| 262 | Կարգ | o | o | o | o | o | o | o | o | o | o | [6]ա |
| 122 | Մայր հարց | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա | ա |
| 220 | Միջոց | o | ա | o | o | o | o | o | o | o | o | ա |
| 139 | Յանձնում | o | ա | ա | o | o | o | o | o | ա | ա | ա |
| 243 | Յետակոչում | o | o | o | o | o | o | o | o | o | [9]ա | o |
| 131 | Յետաձգում, որոշ | o | ա | o | o | o | o | o | o | o | ա | [7]ա |
| 141 | Յետաձգում, անորոշ | o | o | o | o | o | o | o | o | o | ա | [8]ա |
| 148 | Նախորդ հարց | o | o | o | o | o | o | o | o | o | ա | o |
| 271 | Նկատում | o | o | o | o | o | o | o | o | o | [4]ա | o |
| 251 | Նկատումի եղանակ | ա | ա | o | o | o | o | o | o | o | [4]ա | o |
| 271 | Սեղանի վրայ մնալ | o | o | o | o | o | o | o | o | o | [5]ա | o |
| 226 | Վերադիմում | o | o | o | o | o | o | o | o | ա | ա | [1]ա |

Պատկեր Բ կարդալու է հետեւեալ կերպով — Առ առաջարկ մը, օրինակի համար «Որոշ յետաձգում» առաջարկը և հարցուր պատկերին վերի մասին մէջ գրուած հարցումները, ինչպես, Հարցմանց բաժանելի՞ է (o) գէրօ պատասխանը կը նշանակէ ոչ։ Դարձեալ, Բարեփոխելի՞ է, (ա) այբ գիրը կը պատասխանէ այո։ Ասոնց քով դրուած թուանշանները հետեւեալ նշանակութիւններն ունին։

[1] Վերադիմումը սեղանին վրայ թողելու առաջարկը վիճաբանութիւնը կը կտրէ, և եթէ յաջողի, աթոռին որոշումը կը տիրէ։

[2] Ժողովադադարը վիճաբանելի չէ եթէ միայն ժողովին լուծումը նշանակէ ան։

[3] Վիճաբանելի է այն ատեն, երբ «Ցանձնում» առաջարկին հրահանգ կ'ընկերանայ։

[4] Բայց ոչ այն ատեն երբ նկատումը սկսուած է։

[5] Ոչ, եթէ հարցը դրական որոշուած է։

[6] Ոչ իբր իրաւունք, բայց միայն աթոռին թոյլտուութեամբ։

[7] Մայր հարցը վիճաբանութեան առարկայ չըներ։

[8] Մայր հարցը վիճաբանութեան կ'ենթարկէ։

[9] Բայց ոչ այն ատեն երբ առաջարկը յետակոչուած է։

# ՄԱՍՆ Ը

## ԳԼԽԱՒՈՐ ՀԱՐՑ

**255**. *Գլխաւոր հարցը ժողովին խորհրդածութեան առարկան է որ կրնայ առաջադրուիլ անդամի մը կողմէ, կոմիտէի մը տեղեկագրութեամբ, օրէնսդրական մարմնի մը մէկ ճիւղին և կամ կառավարական պաշտօնէութեան մը կողմէ* (*տես թիւ* 120)։

# ՄԱՍ Թ

## ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

**556**. *Երկրորդական առաջարկներ երեքի կը բաժնուին, Օժանդակ, առանձնաշնորհեալ և պատահական*։

**257**. *Օժանդակ առաջարկներ*. — *Ասոնք կը տարբերեն մայր հարցը և կը ծառայեն անոր յառաջացման։ Չորս տարբեր դասերու կը բաժնուին։ Նախադասը միշտ առաջնութիւն ունի իր յետադասներէն։ Նոյնադասներ իրարմէ առաջնութիւն չունին*։

Առաջին Դաս — «Նկատուիմ», անվիճաբանելի և անբարեփոխելի է։ Միայն մայր հարցին համար կը գործածուի (տես 123)։

Երկրորդ Դաս — «Սեղանի վրայ դնել», անվիճաբանելի և անբարեփոխելի է (տես Թ. 127, 204)։

Երրորդ Դաս — ա) «Որոշ յետաձգում», բարեփոխելի և վիճաբանելի է (տես Թ 130)։ բ) «Նախորդ հարց» անվիճաբանելի և անբարեփոխելի է (տես Թիւ 148)։ գ) «Անորոշ յետաձգում», անբարեփոխելի և անվիճաբանելի է թէ առանձինն և թէ մայր հարցին հետ միասին (տես Թիւ 140)։ դ) «Յանձնում» վիճաբանելի և բարեփոխելի է (տես Թ 138)։ Ասոնցմէ առաջ առաջարկուածը՝ առաջ որոշուելու է։

Չորրորդ Դաս — «Բարեփոխում», բարեփոխելի և վիճաբանելի է (տես Թիւ 170)։

258. Առանձնաշնորհեալ Առաջարկներ. — Ժողովին վարկի պահպանումի պէտքը ծագում կուտայ այս առաջարկներուն որոնք բոլոր օժանդակ առաջարկներէն առաջնութիւն ունին (տես Թիւ 209)։

ա) «Ժողովադադար», ոչ վիճաբանելի և ոչ ալ բարեփոխելի է (տես Թիւ 213)։

բ) «Յաջորդ ժողովին օրը որոշել», բարեփոխելի և վիճաբանելի է։

գ) «Միջոց առնել», բարեփոխելի և վիճաբանելի է բայց ոչ առանձնաշնորհեալ, իսկ երբ յաջորդ նըստաժամը որոշուած է, այն ատեն անվիճաբանելի, անբարեփոխելի և առանձնաշնորհեալ է։

դ) «Առանձնաշնորհի խնդիրներ», առաջնութիւն կը վայելեն բոլոր միւս առաջարկներուն վրայ և այս առաջարկը կը նկատուի իբր մայր հարց մինչև որ որոշուի։

259. Պատահական առաջարկներ. — Այս առաջարկներ կը յարուցուին ժողովի ընթացքին պատահած կարգաբեկութեանց ատեն։

260 · Ասոնք, իբաց առեալ «Նկատման եղանակ» առաջարկը» ոչ վիճաբանելի են ոչ ալ բարեփոխելի։

261 · Այս առաջարկներն են․

ա) Կարգ,
բ) Ընթերցանութիւն,
գ) Վերնկատում,
դ) Հարցումի բաժանում,
ե) Նկատումի եղանակ։

262 · Կարգի առաջարկը ըլլալու է իր ատենին, անմիջապէս։ Առաջնութիւն ունի միւս բոլոր առաջարկներէն, վիճաբանելի է ոչ իբր իրաւունք, այլ միայն աթոռին թոյլտուութեամբ (տես թիւ 232)։

263 · Միւս առաջարկներ իրարմէ առաջնութիւն չունին։

# Գլուխ Թ

## ՎԵՐՆԿԱՏՈՒՄ

264 Ամերիկեան խորհրդաժողովներու մէջ հարց մը վիճաբանուելէ, բարեփոխուելէ և որոշուելէ յետոյ, տակաւին բաց է ուրիշ առաջարկի մը առջև ևս որ կը կոչուի «Վերնկատում»։

265· Ասոր ծագման պատճառը սա է· Մայր հարցի բարեշրջման ընթացքին երբեմն կը պատահին սխալներ, որով ժողովը չի կրնար ձեռք ձգել իր փափաքած արդիւնքը։

266· Անգլիական փարլամէնթը այս հարցը չունի, հոն սխալներ շտկելու համար նոր ակտ (act) պէտք է։

267· Սակայն Ամերիկայի մէջ խնդրի մը շուրջ վիճաբանող խումբերէն յաղթող ակումբին անդամներէն մին, — որը միայն իրաւունք ունի սոյն առաջարկը ընելու, — կ'առաջարկէ որ մայր հարցը կամ անոր շուրջ դարձող երկրորդական հարց մը վերնկատուի սրբագրութեան համար։

268· Երկու առաջարկ պէտք է, մին «Վերնկատում» առաջարկը յարուցանելու թոյլտուութիւն խնդրելու համար, և միւսը բուն խնդիրը վերնկատելու համար։

269· Վերնկատումի առաջարկը խնդրին արժանիքին չի հասնիր, այլ միայն անոր քուէարկութիւնը խնդրոյ առարկայ կ'ընէ, և անոր որոշուելէն ետք կ'անցնի բուն խնդրոյն։

270· Եթէ խնդրոյ ենթակայ եղող հարցը իբնէ վիճաբանելի է, այս առաջարկն ալ անոր հետևելով կը վիճաբանուի, եթէ ոչ ուղղակի քուէի կը դրուի։

271. Կան պարագաներ, այսուհանդերձ, ուր վերնկատում թոյլատրեալ չէ, ինչպէս երբ որոշուած հարցի մը գործադրման ձեռնարկուած է, երբ «սեղանի վրայ մնալ» առաջարկը ժխտական որոշուած է, երբ աթոռին որոշումը գործադրուիլ սկսած է, երբ մայր հարցը, որուն մէկ օժանդակը վերնկատուիլ կ'ուզուի, դրական որոշուած է։ Բոլոր նոյնիմաստ հարցերն ալ չեն վերնկատուիր, որովհետեւ նախորդ վճիռ մը կազդէ բոլոր յաջորդ նման հարցերու։ Բայց երբ հարց մը որոշուած և կոմիտէի մը յանձնուած է, ի դարձին կարելի է վերնկատուիլ։

272. Հարց մը մէկ անգամ միայն կարելի է վերնկատուիլ, և այս առաջարկը ըլլալու է հարցումը որոշուած օրը։ Կարելի է, այսուհանդերձ, այս հարցը յարուցանել նոյն օրը ոևէ ատեն, և վերնկատումը յետաձգել յաջորդ ժողովին։

273. Գործի բարդումէ զգուշանալու համար այնպէս կը նկատուի թէ ժողովի մը որոշումը վճռական է, ասոր համար որոշուած հարցի մը, վերնկատումի ճամբով կարելի չէ հասնիլ։ Ինչպէս, երբ բարեփոխմամբ գլխաւոր նախադասութեան մը մէջ բառեր ներմուծուած են, այդ բառերը ոևէ կերպով վերցնել կարելի չէ։ Ու վերնկատումը ոչ թէ այդ բարեփոխման էութիւնն այլ անոր քուէն է որ խնդրոյ առարկայ կ'ընէ։

274. Ժողովներ կրնան կանոն մը դնել, թէ բանաւոր պատճառներով և բացառիկ պարագաներու տակ կարելի է վճիռ մը վերնկատել վերոյիշեալ պարագաներու տակ։

# Գլուխ Ժ

## ՎԻՃԱԲԱՆՈՒԹԻՒՆ

**275** · *Ժողովային վիճաբանութիւնը կը տարբերի դատավարական ընթացքէ ։ Առաջինը անհատական գաղափարի յայտնումն է՝ անձնական տրամաբանութեան վրայ հիմնուած, իսկ վերջինը անկախ մարմնի մը ներկայութեան՝ գոյութիւն ունեցող օրէնքի կամ սկզբունքի վրայ խարսխուած ընդդիմամարտներու կռիւն է ։ Առաջինը կամքի և տրամաբանութեան ներկայացումն է, իսկ երկրորդը իրողութեան մը շուրջ հարց ու պատասխան ։*

**276** · *Ուրեմն վիճաբանութեան գլխաւոր նպատակն է անդամներու կարծիքներ և տեսութիւններ բաղդատելով և կշռելով գաղափարի միութիւն առաջ բերել ։ Գաղափարի միութիւն և ուղիղ դատողութիւն յայտնագործողը մեծամասնութեան ձայնն է ։*

**277** · *Վիճաբանութեան իրաւունքը միայն անդամներու տրուած է ։ Նախագահը կրնայ վիճաբանիլ միայն այն ատեն երբ իր որոշումէն վերադիմում առնուած է, և կրնայ քուէարկել միայն այն ատեն երբ ժողովը երկու հաւասար մասերու բաժնուած է* (*տես Թ* **50**) ։

# ՄԱՍՆ Ը

## ԽՕՍԵԼԱԿԵՐՊ

**278** · *Խօսիլ փափաքող անդամը ոտքի կանգնած աթոռին ուղղելու է անոր պաշտօնին տիտղոսովը ։ Այս պարագան կը կոչուի «գետին բռնել» ։ Աթոռն այս ու-*

ղերձը լսելուն պէս կը թոյլատրէ որ նոյն անձը խօսի։ Երբ քանի մը անձինք միևնոյն ատեն գետին բռնեն, նախագահն իր դատողութեամբ կը թոյլատրէ անոնցմէ մէկին որ խօսի։ Նախագահին այս դատողութիւնը վերադիտումի ենթակայ է (տես թիւ 106, 205)։

279. Աթոռը հոգ տանելու է որ խնդրի մը բոլոր հակառակորդներ իրենց բաժինն ունենան և իրենց տեսութիւններն յայտնեն։ Մասնաւոր պարագաներու տակ թոյլատրելու է միայն այնպիսիներու որոնց ժողովը կ'ուզէ ունկնդրութիւն շնորհել։

280. Սակայն անխափանելի օրէնք է որ բուն իսկ կէս երկվայրկեան առաջ գետին բռնողը առաջ խօսելու իրաւունքն ունի։ (*)

281. Վիճաբանողը իր խօսքը ուրիշին տալու չէ։ Երբ իր խօսքը չլմնցուցած ուրիշի մը թոյլատրէ որ խօսի, ինք այլևս կը կորսնցնէ իր խօսելու իրաւունքը։

282. Բոլոր անդամներ իրենց անդամական հանգամանքով ճանչցուելու են։ Անդամ մը իր անունով կանչուելու չէ։ Ամէն անդամ յիշելու է հետևեալ բանաձևերով. — Անդամներէն մին, նախորդ խօսողը, աջ կողմիս պարոնը, Խարբերդի ներկայացուցիչը, խօսողներէն մին, ևայլն։

233. Վիրաւորիչ բացատրութիւններէ զգուշանալու է, ինչպէս, նախորդ անտրամաբան խօսողը, ևայլն (տես թիւ 59)։

284. Երբ նախագահը կանգնի խօսելու, այս նպատակով ուրիշ կանգնողներ նստելու են։ Նախագահը պարտի սպասել մինչև որ խօսողը իր խօսքը լմնցնէ, և ապա սկսի խօսիլ։

---

(*) Ֆրանսական ներկայացուցչական ժողովին կանոնը կը տրամադրէ որ իբր վիճաբանող նկատի առնուելու համար կանխաւ արձանագրուելու է։ Նոյնօրինակ կանոն մըն ալ Իտալական ժողովէն իւրացուած է։

# ՄԱՍՆ Բ

## ԽՕՍԵԼԱՆԻՒԹ

**285**· *Ամէն անդամ վիճաբանելու իրաւունք ունի՝ որոշ սահմանի մը մէջ։ Վիճաբանութիւնները կեդրոնացած ըլլալու են մայր խնդրին շուրջ, և ոևէ պարագայի տակ ներելի չէ որ անկէ շեղին։*

**286** *Նախորդ որոշումի մը վրայով անհաճոյ լեզու գործածուելու չէ, բայց եթէ այդ ակնարկներ որոշումը յետս կոչելու դիտումն ունենան։*

**287**· *Երկրորդական նախադասութեանց միմիանց յաջորդումով շատ անգամ շփոթութիւններ կը պատահին, այս պարագային տակ նախագահը խօսողներու ուղղութիւն տալու է։*

**288**· *Երբ այս նպատակով աթոռը ընդմիջէ խօսող մը, նախ որոշելու է սա հարցը թէ թողելո՞ւ է որ սոյն խօսողը իր խօսքը շարունակէ։*

# ՄԱՍՆ Գ

## ԽՕՍԵԼԱԹԻՒ

**289**· *Անդամ մը միևնոյն նիւթին շուրջ միայն մէկ անգամ կրնայ խօսիլ։ Այս սովորութիւնը աւելի գերագոյն ժողովներու յատուկ է, և մասնաւոր կանոնով մը կրնայ փոխուիլ։*

**290**· *Երբ խնդիր մը վիճաբանուած և կոմիտէի մը յանձնուած է, ի կարգին հին վիճաբանող մը կրկին կրնայ վիճաբանիլ, թէև խնդիրը նոյն խնդիրն է։ Դարձեալ, անոնք որ խօսած են գլխաւոր առաջարկին վրայ՝ կրնան խօսիլ անոր երկրորդական առաջարկներուն վրայ ևս։*

**291**· *Երկրորդ անգամ խօսիլ ուզողներ՝ ժողովին թոյլտուութիւնը խնդրելու են։*

292 · Իրողութիւն մը պարզելու համար անգամ մը երկրորդ անգամ կրնայ խօսիլ ։

293 · Ոչ ոք իրաւունք ունի ուրիշ մը ընդմիջել ինքզինքը բացատրելու համար, սպասելու է որ խօսքը լմնայ ։

294 · Եթէ խօսողը իր խօսելու իրաւունքը ուրիշին տայ, այլեւս իր խօսքին չի կրնար վերադառնալ ։ Սակայն, երբ յետաձգման առաջարկով մը մէկին խօսքը ընդհատուած է, սոյն առաջարկին բացասական որոշուած պարագային խօսողն իր խօսքին կրնայ վերադառնալ ։

# ՄԱՍՆ Գ

## ՎԻՃԱԴԱԴԱՐ

295 · Վիճաբանութիւնը կը դադրի «Նախորդ հարց» առաջարկով ։ Սակայն ժողովը կը դադրի երբ գործակարգը սպառի և կամ ժողովադադար առաջարկը շնորհուի ։

196 · Այժմ, ժողովներ այս նկատմամբ մասնաւոր կանոններ կը տնօրինեն, գծելով որոշ սահմաններ, թէ այս ինչ նիւթի մը շուրջ վիճաբանողներ այնինչ չափ ատեն խօսելու են, թէ որոշուած ատեն վիճաբանութիւնը դադրելու է, և թէ ինչ պարագաներու տակ խնդիր մը իր յարակից հարցերով անմիջապէս որոշուելու է, ևայլն ։

# ՄԱՍՆ Ն

## ՎԱՅԵԼՉԱԲԱՆՈՒԹԻՒՆ

297 · Անդամներու փոխադարձ պարտականութիւնն է ժողովին և միմիանց իրաւունքն ու շահը չի մոռնալ ։ Ասոր համար վիճաբանութեան ընթացքին բացարձակապէս մաքրախօս ըլլալով, իրաւունքի և արժանա-

*պատուութեան դպչող խօսքեր արտասանելէ խապառխույս տալու է (տես թիւ 58)։*

**298**· *Ան, որուն իրաւունքը կ'ոտնակոխուի, և կամ որուն զգացումը վիրաւորուած է, ոչ ուրիշատեն, այլ նոյն պարագային աթոռին ուղղելով առանձնաշնորհի կամ կարգի խնդիր յարուցանելու է։*

**299**· *Աթոռին պահանջին վրայ գանգատողը կ'արտասանէ վրդովիչ բառերը, որոնք գրի կ'առնուին գրագրի կողմէն։ Երբեմն առանց աթոռին սպասելու կը խօսի սոյն վրդովիչ բառերը և կը խնդրէ որ գրի առնուին կամ ինք կը մատուցանէ զայն գրաւորապէս։*

**300**· *Եթէ աթոռը անարժէք նկատէ գանգատը կարևորութիւն չընծայեր, բայց բուն իսկ այս պարագային եթէ առաջարկուի որ խնդիրը նկատի առնուի, աթոռը պէտք եղած քայլերն առնելով խնդիրը մէջ կը բերէ։ Ցանցանքը կը կարդացուի, եթէ յանցաւորը յանցանքը մերժէ և կարողանայ այնպէս ապացուցանել, լաւ, եթէ ոչ ժողովը կ'ստուգէ խնդիրը և որոշման մը կը յանգի։*

**301**· *Այս գանգատներուն գրաւորապէս մատուցումը ամենէն յանձնարարելի կերպն է, որով խնդիրը անյապաղ ժողովի ուշադրութեան կը յանձնուի։*

# Գլուխ ԺԱ

## ԳՈՐԾԱԿԱՐԳ

302․ Նախագահն իր դատողութեան համաձայն կարող է ժողովին յանձնել իր տրամադրութեան տակ ունեցած գործերը մասնաւոր կամ յարմարագոյն կարգով մը։

303․ Ժողովներ սովորաբար իրենց գործակարգի կանոններ կ'ունենան, որով կրնան շարունակել ժողով մը առանց դժուարութեան կամ ընդմիջումի։

304․ Գործակարգի բնական շարքն է․

ա) Ժողովը կարգի հրաւիրել,

բ) Նախորդ ժողովի ատենագրութեան ընթերցում և վաւերացում։

գ) Անկատար կամ կիսկատար գործեր,

դ) Նոր գործ,

ե) Ժողովադադար կամ յետաձգում։

305․ *Օրակարգ*․— Յաճախ կը պատահի որ մասնաւոր նիստերու համար մասնաւոր գործեր կը յատկացուին, այս գործերը կը կոչուին այն նիստին օրակարգը։ Ուրեմն հոգ տանելու է որ գործակարգին մէջ օրակարգը չի մոռցուի, հակառակ պարագային ոևէ անդամ կարող է ժողովին ուշադրութիւնը զանց առնուած օրակարգին հրաւիրել։

306․ Երբ օրակարգ առաջարկուի, ժողովը իր գործը թողլով օրակարգը ձեռք առնելու է։ Իսկ եթէ օրակարգ չառաջարկուի մոռցուած խնդիրները մոռցուած կը մնան։

307․ Եթէ օրակարգի խնդիրներ շատ են, առաջարկը ընդհանուր ըլլալու է։

308․ Եթէ օրակարգի խնդիր մը մասնաւոր նիստի մը

մէկ որոշ ժամին յատկացուած է ։ Նոյն ժամուն սոյն օրակարգը ձեռք առնելու է ։ Եթէ ժողովը թերանայ, անգամ մը ճիշդ ատենին օրակարգ առաջարկելու իրաւունքն ունի ։

309 · Երբ օրակարգի առաջարկի հետեւանքով, ժողովն իր ձեռքն ունեցած խնդիրը լքէ կամ երեսի վրայ թողու, ժողովը կարող է նոյն խնդիրը վերստանալ այդ առթիւ մասնաւոր առաջարկով մը ։

310 · Ուրեմն վստահ ըլլալու համար յանձնարարելի է որ օրակարգը զետեղուի գործակարգին մէջ, ինչպէս ·

Գործակարգ

ա) Ժողովը կարգի հրաւիրել,
բ) Ժողովատետրի ընթերցում եւ վաւերացում,
Օ ր ա կ ա ր գ,
գ) Կիսկատար գործեր,
դ) Նոր գործ,
ե) Ժողովադադար,

311 · Եթէ կոմիտէի գործ յանձնուած է, եւ տակաւին գործեր ալ կան որ պիտի յանձնուին, այն ատեն կ'ունենանք հետեւեալ գործակարգը ·

ա) Կարգի հրաւիրել,
բ) Ժողովատետրի ընթերցում եւ վաւերացում,
գ) Կոմիտէներու գործ յատկացնել,
դ) Կիսկատար գործեր,
ե) Կոմիտէներու տեղեկագրութեանց ընթերցում
զ) Ժողովադադար ։

Եւ այսպէս կարելի է գործակարգ պատրաստել տեսնուելիք գործերու օրակին եւ քանակին համաձայն ։

312 Ա ռ ա ջ ա ր կ ն ե ր · — Ժողովներ կ'ունենան նաեւ կանոններ որոնք կը ցուցնեն թէ առաջարկներ ինչ կարգով գործածուելու են ։

# Գլուխ ԺԲ



313․ *Անդամներու կողմէն ժողովին ներկայացուած ուէ առաջադրութիւն կը կոչուի «առաջարկ»։ Առաջարկ մը երկրորդուելէն և ժողովին անոր վրայ վիճաբանելէն ետք, երբ աթոռին կողմէն քուէի կը դրուի, այն ատեն կը կոչուի «հարցում», որովհետև հոն որոշուելիք բանը սոսկ հարցում մըն է որուն պատասխանուելու է այո՛ կամ ոչ։*

314․ *Մինչև հիմա խօսած ենք այն ընթացքին վրայ, որով առաջարկ մը կը հասնի հարցումի վիճակին։*

315․ *Գլխաւոր կամ երկրորդական առաջարկի մը վրայ վիճաբանուելէ յետոյ աթոռը կը հարցնէ, «Ժողովը պատրա՞ստ է հարցումին», և եթէ ուէ մէկը չխօսի՝ հարցումը քուէի կը դնէ։*

316․ *Նախագահն առաջին անգամ քուէի կը դնէ հարցման դրական կողմը և յետոյ բացասականը։*

317․ *Քուէարկութեան սովորական կերպերն են․*

*ա) Հարցումներուն ձայնով պատասխանել «այո՛» կամ «ոչ»,*

*բ) Հարցումներուն պատասխանել ձեռք բարձրացընելով կամ ոտքի կանգնելով։ Այս քուէները կը համրուին աթոռէն որոշուած մօնիթօրներու կամ քուէահամարներու միջոցով։*

**318**. *Ֆրանսական ժողովին մէջ ամէն սեղանի վրայ կարմիր ու ճերմակ քարտեր կան ներկայացուցչին անունը վրան տպուած, որոնք ինքնին կը նշանակեն «այո» կամ «ոչ»։ Քուէահաւաքները քարտերը կը հաւաքեն և քուէն կ՚որոշեն։*

**319**. *Ուրիշ ապահով կերպ մըն է անդամներու ցանկը կարդալ և մասնաւորապէս պատրաստուած «այո» և «ոչ»երու սիւնակներուն մէջ անդամներու անուններուն առջևը կամ ետքը այոն կամ ոչը արձանագրել արաբական թուանշաններով, ինչպէս. առաջին այոին տեղ 1, հինգերորդ այոին տեղ 5, ևայլն, որով քուէն դադրածին պէս գրագիրը սիւնակներու ամենավերջին թուանիշները կարդալով կ՚արտասանէ «Վաթսուն այո և քսանևհինգ ոչ»։*

**320**. *Հարցում մը լմնցած չի նկատուիր մինչև որ անոր դրական և բացասական կողմերը քուէի դրուած չեն, հետևաբար մինչև որ բացասական կողմը քուէի դրուի, անդամ մը իրաւունք ունի, եթէ պէտքն զգայ, ոտքի կանգնելու և խօսելու այդ խնդրոյն վրայ։ Բայց երբ բացասական կողմը քուէի դրուի այն ատեն խնդիրը փակուած կը նկատուի։*

**321**. *Քուէարկութեանց ատեն քօրըմը ներկայ ըլլալու է։*

# Գլուխ ԺԳ

## ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ

## ՕՐԷՆՍԴՐԱԿԱՆ ՃԻՒՂԵՐՈՒ ՄԻՋԵՒ

*322. Օրէնսդրական ժողովներ թէև անկախ են վարելու իրենց գործերը, սակայն երբեմն պէտք կ'զգացուի որ այս անջատ մարմիններ, ինչպէս ծերակուտական և ներկայացուցչական դիւաններ, օրէնսդրական գործերու մէջ համախոհ ըլլան։*

*323. Այս մարմիններու հաղորդակցութեան չորս գործնական կերպերն են.—*

*ա) Պատգամ,*
*բ) Խառն կոմիտէ,*
*գ) Ընտրեալ կոմիտէ,*
*դ) Քոնֆէրանս։*

## ՄԱՍ Ա

### ՊԱՏԳԱՄ

*324. Պատգամը հաղորդակցութեան ամենապարզ միջոցն է։ Դիւանէ մը ուրիշ դիւանի պատգամ կը ղրկուի պատգամատար մարմնի մը միջոցով։ Այս մարմինը կ'ընդունի պատգամը մէկ դիւանի գրագրէն և կը յանձնէ զայն միւս դիւանի գրագրին։ Պատգամը ընդունուած ատեն ամէն գործ դադրեցնելու է, որպէսզի նախ պատգամը նկատի առնուի։*

# ՄԱՍՆ Բ

## ԽԱՌՆ ԿՈՄԻՏԷ

325 · *Իւրաքանչիւր դիւան կոմիտէի անդամներ կ'անուանէ, և այս անուանեալներ յետոյ երկու դիւաններու կողմէն փոխադարձ հաւանութեամբ կ'ընտրուին ; որով կը կազմուի խառն կոմիտէն ։*

# ՄԱՍՆ Գ

## ԸՆՏՐԵԱԼ ԿՈՄԻՏԷ

326 · *Իւրաքանչիւր դիւան կ'ընտրէ մէկ մէկ կոմիտէ, որոնք կը հաղորդակցին իրարու հետ ։*

# ՄԱՍՆ Դ

## ՔՈՆՖԷՐԱՆՍ

327 · *Երբ բարեփոխումի մը վրայ դիւաններու միջև անհամաձայնութիւն ծագի, այն դիւանը որ խնդրին պաշտօնական թղթերն ունի, կոմիտէ մը կ'ընտրէ և պատգամ կը ղրկէ միւս դիւանին որ քոնֆէրանս կազմուի ։ Այս վերջինը կը հաւանի և այդ նկատմամբ կոմիտէ մը կ'ընտրէ ։ Այս ընտրեալ կոմիտէներ ժողով կը գումարեն և խնդիրը կը քննեն իրենց տրուած հրահանգներուն համաձայն ։*

328 · *Ուրիշ կերպ քոնֆէրանս մը կայ որ կը կոչուի «ազատ քոնֆէրանս», ուր կոմիտէի անդամներու թոյլատրեալ է որ հրահանգներէն զատ վիճաբանութեան ատեն իրենց դատողութիւնն ու տեսութիւնն ալ գործածեն ։*

329· Եթէ ժողովը քոնֆէրանսի եզրակացութեան չի հաւանի, ուրիշ քոնֆէրանսներ կրնայ կազմել սոյն նպատակով։

330· Քոնֆէրանսի կոմիտէին տեղեկագիրը գրաւոր ըլլալու է և ստորագրուած հաւանող մեծամասնութեան կողմէն։

331· Այս տեղեկագրին վրայ վիճաբանիլ թոյլատրեալ չէ, երկու ճամբայ բաց է միայն, ընդունիլ կամ մերժել։

332· Այս տեղեկագիրը մատուցուած ատեն ժողովը ամէն գործ ձգելով անով զբաղելու է։ Ժողովադադար առանձնաշնորհեալ առաջարկն իսկ հոս անազդեցիկ կը մնայ։

# ՄԱՍՆ Ն

## ԵՐԿՈՒ ԴԻՒԱՆՆԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆԱԿԱՆ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

333· Հինգ առաջարկներ կան որոնք իրարմէ առաջնութիւն ունին հետեւալ կարգով.—

ա) Համամիտիլ (concur),
բ) Չի համամիտիլ (non-concur),
գ) Լքել (recede),
դ) Պնդել (insist),
ե) Փարիլ (adhere)։

334· ա) Համամիտիլ. — Երբ մէկ դիւանը միւսին օրինապատճէն կամ պիլ (bill) մը կը ղրկէ և վերջին դիւանը զայն բարեփոխելով ետ կը դարձնէ, այն ատեն ըլլալիք առաջարկն է համամիտիլ կամ համաձայնիլ։

335· բ) Չի համամիտիլ. — Այս առաջարկը կ'ըլլայ այն ատեն երբ դիւանը չուզեր բարեփոխումին հաւանիլ։

*Ծանօթ.* — Այս երկու առաջարկներ իրարու հակառակ ըլլալով մէկին մերժումը միւսին ընդունումը, և մէկին ընդունումը միւսին մերժումը կը նշանակէ։ Հետևաբար յանձնարարելի է որ առաջին անգամ համամիտիլ առաջարկն յարուցուի։

**336**. գ) Լքել. — Երբ կանխաւ դիւանը առաջարկի մը համամտած չէ, և յետոյ հաւանութիւն կը ցուցնէ, այն ատեն ըլլալիք առաջարկն է՝ «Լքել», այսինքն, թողուլ կանխաւ բռնուած դիրք մը։

**337**. դ) Պնդել. — Եթէ վերոյիշեալ պարագային դիւանը դարձեալ ուզէ մերժել, այս առաջարկը կը յարուցուի։ Ասոր կարելի է աւելցնել թէ ժողովը քոնֆէրանս կ'ուզէ։

**338**. ե) Փարիլ. — Եթէ դիւաններէն մին յայտնէ միւսին թէ հաստատապէս որոշած է ընդունիլ կամ մերժել առաջարկուած բարեփոխումը, եթէ նոյնիսկ պիլը կամ օրինապատճէնը կորսնցնէ իր գոյութեան իրաւունքը, այն ատեն ըլլալիք յարմարագոյն առաջարկն է «փարիլ»։ Երկու դիւաններն ալ եթէ միևնոյն առաջարկը ընդունին պիլը կը կորսնցնէ իր գոյութեան իրաւունքը։

**339**. Եթէ մէկ դիւանը քոնֆէրանսի կոմիտէ մը ղրկէ և միւսը «փարիլ» քուէարկէ, խնդիրը ընդունուած կամ չնորհուած կը նկատուի։

# Գլուխ ԺԴ

## ԲԱՆԱՁԵՒՆԵՐ

### ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԻ ԿՈՉ

**340**. *Ստորագրեալքս կը հրաւիրենք որ այն ամէն անձինք որ կը փափաքին Հայկական Գրասիրաց Ընկերութիւն մը կազմել՝ հաւաքուին այսինչ տեղ, այնինչ սրահ, Հինգշաբթի, Սեպտեմբեր 22, 1912, կէսօրէ վերջ, ժամը 5-ին։*

*Արա*
*Բաբկէն*
*Գուրգէն*

(*Տես թիւ* 11)

### ԺՈՂՈՎԸ ԿԱՐԳԻ ՀՐԱՒԻՐԵԼ ԵՒ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ

**341**. *Վերոյիշեալ կոչին իպատասխան կարգ մը անձինք որոշուած տեղը հաւաքուած ըլլալով, Պրն. Արա կամովին կամ խնդրանքի մը համաձայն, ոտքի կանգնելով կ'ըսէ. «Ժողովը բանալու ժամն հասած ըլլալով, կը համարձակիմ ժողովը կարգի հրաւիրել»։ Ամէն ոք աթոռ մը կը գրաւէ և լռիկ մնջիկ անոր մտիկ կ'ընէ։ Պրն. Արա կը շարունակէ, և կ'անուանէ Պրն. Բաբկէն իբր ատենապետ՝ ըսելով, «Անոնք որ կը հաւանին թող ըսեն 'այո'»։ Այոները կ'արտասանուին։ Դարձեալ, «Անոնք որ հակառակ են թող 'ոչ' ըսեն։ Ոչերն ալ կ'արտասանուին և Պրն. Արա կը յայտարարէ թէ այո-ները վաստկեցան և ուրեմն Պրն. Բ. ընտրելի է։ Ուրիշ կերպ մը. — Պրն. Արա. «Պրն. Բաբկէն իբր ատենապետ ընտրելի որոշուած է, ուրիշ անուանումներ ալ կա՞ն»։ Երկու անձինք եւս ընտրելի կը նկատուին։ Պրն. Գ.*

կ'առաջարկէ որ ընտրութիւնը դադրի և ատենապետը գրաւոր քուէով ընտրուի։ Երեք ընտրելիները քուէի կը դրուին և անոնցմէ մեծամասնութեան քուէն վաստկողը կ'ընտրուի ատենապետ։ Կամ երեք ընտրելիները անջատօրէն քուէի կը դրուին և անոնցմէ առաւելագոյն մեծամասնութեան քուէն վաստկողը կ'ընտրուի։

## ԱՏԵՆԱՊԵՏԸ

342· Ընտրութեան աւարտումէն յետոյ ատենապետը իր աթոռը գրաւելով յարգանքները կը մատուցանէ ժողովին և յետոյ կը յառաջանայ ընտրել նոյն մէթոտով ատենադպիր, ևայլն։

343· Ատենապետը կը հրահանգէ ատենադպիրն որ ընտրութեան արձանագրութիւնը կարդայ, որմէ յետոյ կը յայտարարէ թէ այժմ պատրաստ է գործի սկսելու։ Պրն. Դ. կ'առաջարկէ որ անդամներու վկայագրերը քննելու և զանոնք վաւերացնելու համար կոմիտէ մը ընտրուի, որպէսզի ժողովը տևականապէս կազմակերպուի։ Անդամական կոմիտէն կ'ընտրուի։ Կոմիտէն կը քննէ անդամները և անոնց ճշգրիտ ցանկը կը յանձնէ ատենադպրին։

## ՓԱՐԼԱՄԷՆԹԱԿԱՆ ՀԱՐՑՈՒՄՆԵՐ

344· Եթէ անդամ մը կը փափաքի գիտնալ թէ ինչ պիտի ըլլայ մասնաւոր քայլի մը արդիւնքը, կը կանգնի և կ'ըսէ, «Տէր ատենապետ, կը կանգնիմ փարլամէնթական հարցման մը համար»։

Ատենապետը. — Թող պարոնը բարեհաճի խօսիլ»։

Անդամը. — «Տէր ատենապետ, եթէ 'Չի համամիտիլ' առաջարկը մերժուի, ի՞նչ պիտի ըլլայ արդիւնքը»։

Ատեն. — «Արդիւնքը պիտի ըլլայ 'համամիտիլ'։

*Անդամ. — «Համամիտի՞լ առաջարկը ի կարգին պիտի նկատուի՞ երբ յարուցուի ուղղակի քուէ առնելու համար»:*

*Ատեն. — «Անտարակոյս»:*

## ԿԱՐԳԻ ԽՆԴԻՐ

345. *Սովորական կանոնն է որ կարգաբեկութեան ատեն անդամ մը ոտքի կանգնելով աթոռին ուղղէ.*

*«Տէր ատենապետ, կը կանգնիմ կարգի խնդրի համար:»*

*«Ատեն. — Պարոնը թող հաճի խօսիլ խնդիրը»:*

*Անդամը. — Տէր ատենապետ, կարգի խնդիրը սա է. մեր կանոնը կը տրամադրէ որ ժամը տասին կիսկատար գործերու ձեռք զարնուի, և հիմա ժամը տասն է»:*

*Ատեն. — «Խնդիրը ճիշդ է: Ուրեմն սկսինք կիսկատար գործերուն»:*

*Եթէ ժողովը չուզեր կիսկատար գործերուն սկըսիլ ճիշդ այդ ատեն կամ թէ կարգի խնդիրը իրաւացի չի գտնուի, ուրիշ անդամ մը կանգնելով աթոռին կ'ուղղէ.*

*«Տէր ատենապետ, անդամը կարգի կը կոչեմ և կը խնդրեմ որ խօսածը գրի առնուի»:*

*Ողագիրը խօսուածը ժողովին կը կարդայ և ժողովը կ'որոշէ կարգը:*

## ՕԺԱՆԴԱԿ ՀԱՐՑԵՐ

346. *Նկատում. — «Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ .... առաջարկը նկատուի»:*

*Ատեն. — «Պարոնը նկատումի հարց կը յարուցանէ, որոնք որ համամիտ են թող «այո» ըսեն, և որոնք որ համամիտ չեն թող «ոչ» ըսեն:»*

*Այո-ները կը վաստկին և խնդիրը կը նկատուի:*

**347**. *Սեղանի վրայ մնալ.* — *Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ որոշումը սեղանին վրայ դրուի։»*

**348**. *Յետաձգում.* — *«Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ այս որոշման նկատառումը յետաձգուի յառաջիկայ Յուլիս* 10, *ժամը* 8*-ին»։*

*Ուրիշ անդամ մը.* — *«Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ այդ առաջարկը բարեփոխուի «Յուլիս» բառը ջնջելով և անոր տեղ «Օգոստոս» ներմուծելով»։*

**349**. *Յանձնում.* — *Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ այդ առաջարկի քննութիւնը ատեանէն ընտրուելիք կոմիտէի մը յանձնուի»։*

**350**. *Բարեփոխել.* — *«Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ ..... երկրորդ պարբերութեան առաջին տողը ջնջուի», կամ «կ'առաջարկեմ որ ...... պարբերութեան առաջին տողին չորրորդ և հինգերորդ բառերուն միջև այնինչ բառերը ներմուծուին», կամ «կ'առաջարկեմ որ ...... պարբերութեան երկրորդ նախադասութիւնը ջնջուի և անոր փոխան այն ինչ նախադասութիւնը ներմուծուի»։*

**351**. *Նախորդ Հարց.* — *«Տէր ատենապետ, նախորդ հարց կ'առաջարկեմ»։*

*Ատեն.* — *«Պարոնը նախորդ հարցը կը պահանջէ, ժողովը կ'ուզէ՞ պահանջը շնորհել», կամ «Նախորդ հարցը պիտի տրուի՞ հիմա։ Անոնք որ կ'ուզեն թող ըսեն «այո» և անոնք որ չեն ուզեր թող ըսեն «ոչ»։*

## ԱՌԱՆՁՆԱՇՆՈՐՀԵԱԼ ԵՒ ՊԱՏԱՀԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ

**352**. *Ժողովադադար.* — *«Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ ժողովը հիմա յետաձգուի» կամ «յետաձգուի մինչև վաղն առաւօտ ժամը* 10*-ին», կամ «կ'առաջարկեմ որ եթէ ժողովը յետաձգուի, դարձեալ գումարուի վաղն առաւօտ ժամը* 10*-ին»։*

353. *Միջոց*. — «Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ ժողովը միջոց առնէ», կամ «ժողովը միջոց առնէ մինչև ժամը եօթը»։

354. *Առանձնաշնորհի խնդիր*. — «Տէր ատենապետ, կը կանգնիմ առանձնաշնորհի խնդրի մը համար»։

Ատեն. — «Թող պարոնը հաճի խօսիլ իր առանձնաշնորհի խնդիրը»։

355. *Ընթերցանութիւն*. — «Տէր ատենապետ կ'առաջարկեմ որ ատենադպիրը կարդայ .... թղթերը»։

356. *Առկախում*. — «Տէր ատենապետ, կ'առաջարկեմ որ .... կանոնները առկախուին և որոշումը անցուի»։

357. — *Յետակոչում*. — «Տէր ատենապետ, առաջարկը կամ որոշումը յետակոչելու համար ժողովին կամքը կը խնդրեմ»։

358. *Հարցումի բաժանում և կարգ*. — «Տէր ատենապետ, կը խնդրեմ որ հարցումը բաժնուի, և կ'առաջարկեմ որ հետևեալ երեք մասերուն բաժնուի. առաջինը վերջանայ այսինչ բառերով, երկրորդը այնինչ և երրորդը՝ այնինչ»։

Ատեն. — «Պարոնը կը խնդրէ որ հարցը երեք մասերու բաժնուի։ Եթէ բաժնուի ժողովը պիտի քուէարկէ առաջինին վրայ որ է ..........., յետոյ երկրորդին վրայ որ է .........., և ապա երրորդին վրայ որ է ..........»։

Անդամ մը. — «Տէր ատենապետ, կը կանգնիմ կարգի խնդրի համար»։

Ատեն. — «Թող պարոնը հաճի խօսիլ կարգի խընդիրը»։

Անդամ. — «Կարգի խնդիրն է թէ բաժնուած հարցին այնինչ մասը ինքնին էական հարց մը չի ներ-

կայացներ. եթէ առաջինը բացասական որոշուի, մընացած երկու մասերը բան մը չեն նշանակեր։»

Ատեն. — «Կ'ընդունիմ կարգի խնդիրը և կը մերժեմ առաջարկը»։

359. Հետևեալը օրինակ մըն է ժողովէն անցուած որոշումի մը, որով ժողովը հաւատարիմ և գործունեայ պաշտօնէի մը յարգանք կը մատուցանէ. —

## ՈՐՈՇՈՒՄ

Նկատելով որ Պրն. Հրաչ Գնունի, որ այս ընկերութեան կազմակերպումէն ի վեր գանձապահի պաշտօն վարած է, և այս անգամ իր խանգարուած առողջութեան հետևանքով այդ բազմազբաղ և պատասխանատու պաշտօնին ընտրելի ներկայանալէ կը հրաժարի, որուն ժողովը ակամայ ստիպուած է հաւանիլ։ Նկատելով որ իր պաշտօնավարութեան միջոցին Պրն. Գնունի կատարած է իր պաշտօնական պարտականութիւնները բացառիկ ճշդապահութեամբ, ուղղամտութեամբ և կարողութեամբ ի ջերմ գոհունակութիւն այս ընկերութեան, իբր արտայայտութիւն մեր անկեղծ յարգանաց որոշուեցաւ որ Հայկական Գրադարանական Ընկերութիւնս ներկայացնէ Պրն. Հրաչ Գնունիի իր սրտագին շնորհակալութիւնները՝ տարիներու ընթացքին իբր գանձապահ մատուցած իր անձնուէր ծառայութեան համար, և արտայայտէ այն յոյսը թէ այս հրաժարումին փութով պիտի յաջորդէ իր անձնական կատարեալ առողջութիւնը, որոշուեցաւ որ ընկերութեանս ատենապետին իշխանութիւն տրուի և խնդրուի որ ի նշան մեր յարգանաց գնէ և նուիրէ Պրն. Հրաչ Գնունիի ընկերութեանս կնիքը կրող ոսկի ժամացոյց մը, որոշուեցաւ նաև որ այս որոշումէն օրինակ մը ատենադպրին կողմէն ներկայացուի Պրն. Հ. Գնունիի։

ԾԱՆ. — Այս տեսակ որոշումներ կ'անցուին շնորհակալութեան, գնահատումի, մխիթարումի, ցաւակցութեան, ևայլնի համար։

# ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

Ա. Այս կազմակերպութիւնը պիտի կոչուի ՀԱՅԿԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ»։

Բ. Այս ընկերութեան նպատակն է մշակել իր անդամներու գրական կարողութիւնն ու ճաշակը, և ծառայել անոնց ուսումնական նպատակներուն և փափաքներուն յառաջացման և իրագործման։

Գ. Բոլոր անոնք որ նախնական կրթութիւն մը առած են և կը բնակին այս քաղաքին մէջ, որոնք ունին անբիծ նկարագիր և ուսման տենչ, ընդունելի են, ըստ կանոնագրի տրամադրութեան, իբր գործօն անդամ, և ամէն անոնք որ հեռու տեղեր կը բնակին ընդունելի են իբր թղթակից անդամ, այս վերջինները քուէարկելու իրաւունք պիտի չունենան։

Դ. Եօթն անդամէ բաղկացող տիրէքթօրներու դիւան մը պիտի կառավարէ ընկերութեանս գործերը։ Տիրէքթօրներ պիտի ընտրուին տեղացի անդամներու կողմէն կանոնագրութեան տրամադրած եղանակով։ Այս դիւանէն զատ, ընկերութեանս գործադիր պաշտօնեաները պիտի ըլլան՝ ատենապետ, դեր-ատենապետ, ատենադպիր և գանձապահ։ Այս պաշտօնեաներ պիտի ընտրուին տեղացի անդամներուն կողմէն, և պէտք չէ որ տիրէքթօրի պաշտօն ստանձնած ըլլան։

Ե. Ընկերութիւնս կրնայ իւրացնել կանոններ իր գործը յաջողապէս վարելու համար, սակայն այդ կանոններ այս սահմանադրութեան և երկրին օրէնքներուն հակառակ ըլլալու չեն։

Զ. Այս սահմանադրութիւնը կարելի չէ բարեփոխել, եթէ միայն կանոնաւոր ժողովի ընթացքին տեղացի գործօն անդամներու երեք-չորրորդ քուէովը, պայմանաւ որ գրաւոր տեղեկութիւն տրուի անդամներուն՝ գումարելիք ժողովին, տեղին և ատենին և սահմանադրութեան բարեփոխուելիք մասին վրայով՝ ժողովի գումարուելէն առնուազն հինգ օր առաջ։ Սոյն ժողովին մէջ սահմանադրութեան ոչ մէկ մասը կարելի չէ փոխել որ գրաւոր ծանուցման մէջ յիշուած չէ։

# ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԻՒՆ

*Հայկական Գրասիրաց ընկերութեան սահմանադրութեան հինգերորդ յօդուածին տրամադրութեան համաձայն, մենք, յիշեալ ընկերութեան գործօն անդամներս, այս նկատմամբ Մայիս 26, 1912-ին սարքուած մասնաւոր ժողովին մէջ պատրաստեցինք և ընդունեցինք հետևեալ կանոնագրութիւնը·*

## ԳԼՈՒԽ Ա·

## ԱՆԴԱՄԱԿՑՈՒԹԻՒՆ

*ՄԱՍ 1· — Ոևէ մարդ, առանց սեռի խտրութեան, որ սահմանադրութեան Գ յօդուածին պահանջուած հանգամանքն ունի, կրնայ դիմել ընկերութեանս՝ անդամակցելու համար։ Դիմումը ըլլալու է գրաւոր և ստորագրուած դիմողէն, որուն պէտք է ընկերանայ երկու անդամներու վկայութիւնը դիմողի նկարագրին վրայով։*

*ՄԱՍ 2· Դիմումը յանձնուելու է ատենադպրին։ Ատենադպիրը սոյն դիմումն ընդունելուն պէս տպուած ծանուցում ղրկելու է ամէն գործօն անդամի։ Այդ ծանուցումը պարունակելու է դիմողին անունը և յատկանիշները, ինչպէս նաև վկայող անդամներու անունները։ Այս ընելէ վերջ ատենադպիրը դիմումը յանձնելու է անդամակցական կոմիտէին։*

*ՄԱՍ 3· Կոմիտէն դիմումը քննելէ վերջ զայն տեղեկագրելու է յաջորդ ժողովին, ուր քուէով յիշեալ դիմողը կ՚ընտրուի իբր անդամ։*

## ԳՈՒՈՒԽ Բ

## ՏԻՐԷՔԹՕՐՆԵՐՈՒ ԴԻՒԱՆ

ՄԱՍ 1· Տիրէքթօրներու դիւանը իր առաջին ժողովին մէջ այնպէս կարգադրելու է որ առաջին երկու տարուան վախճանին երեք, իսկ երկրորդ երկու տարուան վախճանին միւս չորս անդամները փոխուին և յաջորդաբար ։

ՄԱՍ 2· Եթէ ոեւէ պաշտօն թափուր մնայ դիւանը առժամապէս կրնայ ընտրել գործօն անդամներէն մէկը, մինչև որ ընտրութեան ատեն պատշաճ տիրէքթօր մը ընտրուի ։

## ԳՈՒՈՒԽ Գ

## ԳՈՐԾԱԴԻՐ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ

ՄԱՍ 1· Գործադիր պաշտօնեաները պիտի ըլլան ատենապետ, դեր-ատենապետ, ատենադպիր և գանձապահ ։

ՄԱՍ 2· Այս պաշտօնեաներու պարտականութիւնը պիտի ըլլայ կատարել ամէն ինչ որ կը պահանջուի ըստ փարլամէնթական ընդհանուր կանոններու ։

ՄԱՍ 3· Տիրէքթօրներու դիւանը ընկերութեանս համար կրնայ վարձել գործակատարներ և որոշել անոնց վարձագիններն ու պարտականութիւնները ։

ՄԱՍ 4· Բոլոր պաշտօնեաներու և տիրէքթօրներու ընտրութիւնը պիտի կատարուի ամէն երկու տարին անգամ մը (տես Գոդ · Բ, Մաս 1), քուէից առաւելութեամբ, պայմանաւ որ առաւել քուէ վաստկողը տասէն պակաս քուէ առած չըլլայ ։

## ԳՈՒՈՒԽ Դ

## ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՍ 1· Ընկերութեանս ժողովները պիտի գումարուին ամէն երկրորդ ամսու առաջին Հինգշաբթի օրը, կէսօրէ վերջ ժամը 7-ին ։

ՄԱՍ 2. Մասնաւոր ժողովներու համար ատենադըպիրը գրաւոր ծանուցագիր ղրկելու է բոլոր անդամներուն՝ ժողովէն առնուազն երկու օր առաջ։

ՄԱՍ 3. Այս ծանուցագիրը համառօտիւ յայտնելու է գումարումին նպատակը, տեղն ու ատենը։

ՄԱՍ 4. Ժողովին գործակարգն ըլլալու է հետեւեալը.

Ա. Կարգի հրաւէր,

Բ. Նախորդ ժողովի ատենագրութեան ընթերցում,

Գ. Պաշտօնեաներու տեղեկագիրը,

Դ. Կոմիտէներու տեղեկագիրը,

ա) Ելեւմտական կոմիտէ,

բ) Անդամական կոմիտէ,

գ) Տան կոմիտէ,

դ) Զանազան գործերու կոմիտէ,

ե) Մասնաւոր կոմիտէներ,

Ե. Կիսկատար գործեր,

Զ, Նոր գործ,

Է. Ժողովադադար։

ՄԱՍ 5. Մասնաւոր ժողովի գործակարգն ըլլալու է.

Ա. Կարգի հրաւէր,

Բ. Քօրըմի ներկայութիւնը,

Գ. Ծանուցագրին մէջ յայտարարուած գործեր,

Դ. Ժողովադադար։

## ԳՕԴՈՒԱԾ Ե.

## ՔՕՐԸՄ

ՄԱՍ 1. Ընկերութեանս քօրըմը ներկայացնող թիւը պիտի ըլլայ քսանևհինգ, բոլոր պաշտօնեաներն ալ միասին հաշուելով։

ՄԱՍ 2. Կոմիտէներու քօրըմը պիտի կազմէ անոնց անդամներու մեծամասնութիւնը։

ԽԱՍ 3. Անոնք որ հիւանդութեան կամ բանաւոր պատճառներով ժողովէ բացակայ կը գտնուին, իրաւունք պիտի ունենան իրենց տեղ փոխանորդ մը կարգելու։

ՄԱՍ 4. Փոխանորդի քուէարկութիւնը տիրէքթօրներու դիւանին և կոմիտէներու համար չէ։

## ՅՕԴՈՒԱԾ Զ

## ԿՕՄԻՏԷՆԵՐ

**ՄԱՍ 1.** Ընկերութեանս կանգուն կոմիտէներն են.

Ելեմտական կոմիտէ,
Անդամական կոմիտէ,
Հաճոյից կոմիտէ,
Տան կոմիտէ,
Զանազան գործերու կոմիտէ։

**ՄԱՍ 2.** Բոլոր կոմիտէները պիտի բաղկանան երեքական անդամներէ, բացի Հաճոյից և Զանազան գործերու կոմիտէները, որոնք պիտի բաղկանան հինգական անդամներէ։

**ՄԱՍ 3.** Ելեմտական կոմիտէն պիտի ընտրուի ժողովին կողմէն, իսկ միւս կոմիտէները պիտի ընտրուին նախագահին կողմէն։

**ՄԱՍ 4.** Ելեմտական կոմիտէն պիտի ստանձնէ և քննէ ընկերութեանս բոլոր ելեմտական և գանձային գործերը։

Անդամական կոմիտէն օտարներէ դիմումներ պիտի ընդունի և զանոնք իբր ընտրելի անդամ պիտի ներկայացնէ յաջորդ ժողովին։

Հաճոյից կոմիտէն պիտի սարքէ երբեմն, ժողովի կամքին համաձայն, երեկոյթներ և հացկերոյթներ բոլոր անդամներու զուարճութեան համար։

Տան կոմիտէն հոգ պիտի տանի ժողովասրահին և պիտի հայթայթէ անոր պէտքերը։

Զանազան գործոց կոմիտէին կը վերաբերի բոլոր այն գործերը որոնց համար որոշ կոմիտէ մը յատկացուած չէ։

## ՅՕԴՈՒԱԾ Է

## ԱՆԴԱՄԱՎՃԱՐ

**ՄԱՍ 1.** Գործօն անդամներ արձանագրուած պահին վճարելու են հինգ տալէր, և այնուհետև վճարելու են տարեկան երկու տալէր։

**ՄԱՍ 2.** Թղթակից անդամներ իբր մուտք վճարելու են հինգ տալէր, և իբր տարեկան անդամագին վճարելու են երեք տալէր։

ՄԱՍ 3 · Մուտքի տուրքերը վճարուելու են արձանագրութեան ատեն, իսկ տարեկան անդամավճարները՝ իւրաքանչիւր Յուլիս 1-ին կամ անկէ առաջ ։

ՄԱՍ 4 · Իւրաքանչիւր տարուայ Յուլիս 1-էն մինչև երկու ամիս տուրք չվճարող անդամներ պիտի կորսնցնեն իրենց անդամական իրաւունքը ։

## ՅՕԴՈՒԱԾ Ը

## ՊԱՏԻԺ

Յանցաւոր անդամներ ժողովին երկու-երրորդ քուէովը տնօրինուած պատժին համաձայն տուժելու կամ պատժուելու են ։ Մանր յանցանքներու համար կարելի է անդամ մը արտաքսել ։

## ՅՕԴՈՒԱԾ Թ

## ԿԱՆՈՆՆԵՐ

ՄԱՍ 1 · Նախորդ հարց առաջարկը չպիտի նկատուի մինչև որ երկու անդամներու կողմէն չերկրորդուի ։

ՄԱՍ 2 · Բոլոր առաջարկներ երկրորդուելու են ։

ՄԱՍ 3 · Նախագահին որոշումը վերադիմումի ենթակայ է, երկու-երրորդ քուէով ։

ՄԱՍ 4 · Վերադիմումը անվիճաբանելի պիտի ըլլայ ։

## ՅՕԴՈՒԱԾ Ժ

## ՓՈՓՈԽՈՒՄ

Այս կանոնագրի ուէ մէկ յօդուածը կամ անոր մէկ մասը կարելի է փոխել և յաւելումներ ընել ժողովին երեք-չորրորդ քուէովը ։

ԾԱՆՕԹ · Այս սահմանադրութիւնն ու կանոնագրութիւնը իբր նմուշ չէ որ հոս կը դրուին, այլ իբր սոյն գրութիւնները պատրաստելու ընդհանուր ուղղեցոյց մը ։ Հոն նշանակուած են միայն գլխաւոր կէտեր, և զանց առնուած են կարգ մը բաներ, որոնք մանրամասնութեամբ կրնային գետեղուիլ ։

Ընկերութեան մը նպատակին համեմատ իր զբաղումի առարկաներն ալ կը փոխուին, բայց գործի ընդհանուր սկզբունքը բնաւ չի փոխուիր ։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ջնջու

## ՎՐԻՊԱԿ

*Երես 31, Թիւ 122.— «Ժողովային այս յետախաղացու-թեանց համար» կարդալու է*
*«Ժողովային այս յետախուզութեանց համար»։*

